3րդ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ — Օ. ԱՐՋՈՒՄԱՆ



# Ի՞ՆՉ ՊԷՏՔ Է ԳԻՏՆԱՅ

# ԴԵՌԱՏԻ ՄԱՆՉ ՄԸ





# Ի՞ՆՉ ՊԷՏՔ Է ԳԻՏՆԱՅ ԴԵՌԱՏԻ ԱՂՋԻԿ ՄԸ

## ԳՆԱՀԱՏԱԿԱՆՆԵՐ
### ՊՈԼՍՈՅ
### ՀԱՅ ՄԱՄՈՒԼԻՆ ԿՈՂՄԷ

**Ի՞նչ Պէտք է Գիտնայ Դեռատի Աղջիկ** մըն *ա՛յնչափ օգտակար ու անմիջական կարեւորութեամբ գործ մըն է մեր համայնքին համար, որչափ հրատարակչական մեր ամուլ գործունէութիւնը պէտքը կը զգացնէ այդօրինակ հրատարակութիւններու։ Անիկա՝ իր բովանդակութիւնովը՝ լի՛ովին կ'իրականացնէ իր անունին խոստումները, կեանքի ամէ՛ն վիճակներուն ու երեւոյթներուն մէջ՝ սորվեցնելով թէ՝ ի՛նչ պէտք է գիտնայ դեռատի աղջիկ մը։ . . .* **Ի՞նչ Պէտք է Գիտնայ Դեռատի Աղջիկ** *մըն իր ընդհանուր բնոյթով մեծապէս արժանի է գնահատութեանը այն ժողովուրդին՝ որուն կ'ուղղուի եւ ուր կոչուած է կենսական պէտք մը լրացընելու։ Անոր՝ քիչ ժամանակի մէջ մէկ քանի լեզուներու թարգմանուած ըլլալը՝ հաւաստիք մըն է արդէն իր արժէքին։*

ԵՆՈՎՔ ԱՐՄԷՆ

**Արեւ. Մամուլ**, 36*րդ Տարի, Թիւ* 37

*Այդ գրքին մէջ ամփոփուած են այն ամէն գիտելիքները, որոնք անհրաժեշտ են տասը տարեկանէ վեր աղջիկներու համար։*

**Արեւելք**, *Թիւ* 6264

*Դեռատի աղջիկներու օգտակար գիտելիքներ կը պարունակէ։*

**Աւետաբեր**, *հատոր ԺԹ. Թիւ* 37

*. . . Երկար ատենէ ի վեր պակասը զգացուած գիրք մը,* **Ի՞նչ Պէտք է Գիտնայ Դեռատի Աղջիկ մը** *. . . : Շնորհաւորելի է, որ այսպէս տիեզերական ժողովրդականութիւն վայելող գրքերու շարքի մը հայացման ձեռնարկուած է։*

**Բիւզանդիոն**, *Թիւ* 3012

*Կեանքի ծագման ու գոյութեան մասին գոհացուցիչ ու լիուլի տեղեկութիւններ կուտայ պարկեշտ ու մաքուր լեզուով մը։ Յանձնարարելի աշխատութիւն մ'է այս։*

**Բիւզանդիոն**, *Թիւ* 3030

*Ահաւասիկ ճշմարիտ գիրք մը, որ ոչ միայն դեռատի աղջիկներուն, այլ նաեւ հասուն մարդոց շատ բան կը սորվեցնէ։ . . . Այս գիրքը ցոյց կուտայ այն պարզ եւ գործնական միջոցները, որոնց անխարդախ գործադրութիւնը պիտի ապահովէ տուներու երջանկութիւնը։ . . . Կ'արժէ որ այս գիրքը տարածուի մեր ընտանեկան յարկերու տակ եւ մատաղ սերունդի դաստիարակութեան հետ զբաղող ամէն անհատ եւ մանաւանդ մայրեր կամ ծնողքներ պարտաւոր ըլլան գիտնալ այս գիրքին մէջի գրուածները եւ գիտցնել իրենց փոքրիկներուն։*

**Լոյս**, *Նոր շրջան, Բ. Տարի, Թիւ* 38

**Ի՞նչ Պէտք է Գիտնայ Դեռատի Աղջիկ մը** *անուն օգտակար գիրքը կոչուած է բարձրացնել մեր աղջիկները աւելի բարձր եւ նուրբ գիտակցութեան մը հասած մայրութեան։ . . . Այս այն կարգի գիրքերէն է, որուն իր փեղոյրին չափ պէտք ունի մայր մը, պատով առաջնորդելու իր չափահաս աղջիկը կեանքի այն գաղտնի գիտութեան՝ որուն ուսուցումը կ'անտեսէ շատ մը կանխատես եւ բանիմաց մայրեր։*

ՀԱՅԿԱՆՈՅՇ ՄԱՌՔ
**Ծաղիկ,** *Բ. Շրջան, Թիւ* 2

**Ի՞նչ Պէտք է Գիտնայ Դեռատի Աղջիկ մը** *կուգայ լեցնել մեր մէջ զգալի պակասը այն բարոյական խրատականին, ուրկէ զուրկ են գրեթէ օրուան աղջիկները, թերեւս ծնողաց անտարբերութեան երեսէն։ Կը յանձնարարենք ուրեմն այս օգտակար հատորիկը մեր քոյրերուն, եւ կը փափաքինք որ ունենան անոնք մէկ մէկ հատ, որուն ընթերցումը շինիչ հանգամանք մը ունի, եւ ինչպէս ըսինք օգտակար է իր պարունակութեամբը։*

ՎԱՀԱՆ ՓԱՓԱԶԵԱՆ
**Հանրագիտակ,** *Բ. Տարի, Թիւ* 4

*Անունն իսկ կը բաւէ համոզելու համար թէ ի՛նչ է այս գեղեցիկ հատորին օգտակարութիւնը եւ որչափ կարեւոր տեղ մը կուգայ լրացնել ան նաեւ մեր մէջ։ Ամերիկացի նշանաւոր Տօքթորուհիին այս աշխատասիրութիւնը շատ իրաւամբ կարճ ժամանակի մէջ աշխարհի գրականութեանց շրջանը ըրաւ, եւ այս պահուս դեռ մամլոյ տակ է եւրոպական եւ ասիական կարգ մը լեզուներով։ . . . Մեր մէջ շատ քիչ կը հրատարակուին այս տեսակ օգտակար գիրքեր, որոնց թիւը մաղթելի էր որ աւելնար։ ...* **Ի՞նչ Պէտք է Գիտնայ Դեռատի Աղջիկ մըն** *գերազանցապէս կենսական եւ էական գիրքն է 10 տարեկանէն վեր բոլոր աղջիկներուն, եւ ամէն ծնողք պարտաւորութիւն զգալու է, իր զաւկին բարոյական եւ սրտի դաստիարակութեան համար այս գիրքը տալու անոր ձեռքը։*

**Մանզումէ,** *Թիւ* 1582

*Բարոյալից եւ օգտակար հրատարակութիւն մըն է զոր ջերմապէս կը յանձնարարենք, մանաւանդ դեռատի աղջիկներուն ընթերցման։*

**Մասիս,** *Լ. Շրջան, Թիւ* 23

*Այս գործը առաջինը շարքի մը՝ ընկերային բարոյականի զօրացման եւ սերունդներու բարելաւման նպաստող լաւագոյն գրքերէն մէկն է, արժանի ամէն տան մէջ գտնուելու։* **Սուրհանդակ,** *Թիւ* 2290

*Ամէնէն լուրջ ու հմուտ միտքէն սկսեալ, ամէնէն դեռատի աղջիկը մասնաւոր հաճոյքով մը պիտի կարդան զայն, անոր մէջ փնտռելով բոլոր գաղտնիքը կեանքի երեւոյթներուն։*

Մ. ՊԱՐՍԱՄԵԱՆ
**Սուրհանդակ,** *Թիւ* 2309

# Ի՞ՆՉ ՊԷՏՔ Է ԳԻՏՆԱՅ ԴԵՌԱՏԻ ՄԱՆՉ ՄԸ

## ՅԱՆՁՆԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ
## ՆՇԱՆԱՒՈՐ
## ԱՅՐԵՐՈՒ ԵՒ ԿԻՆԵՐՈՒ
## ԿՈՂՄԷ

*Ձեր գիրքը՝* **Ի՞նչ պէտք է գիտնայ դեռատի մանչ մը,** *իր նիւթին վրայ կը խօսի վերին աստիճանի փափկութեամբ և յստակութեամբ, և ծնողաց ինչպէս մանչերու տուած յորդորներովը կատարելապէս արժանի է վստահութեան։ Անոր իւրաքանչիւր էջը թելադրիչ, ներշնչող և ուսմնագիտական է այն աստիճան, որ կը խորհիմ թէ նմանօրինակ հրատարակութիւններէ ոչ մէկը կրնայ իրեն հաւասարիլ։»*

*ՃՕԶԷՖ ՔՈՒՔ*

Նշանաւոր ամերիկացի ուսուցիչ, հեղինակ «Կենսաբանութիւն», «Ամուսնութիւն», «Աշխատութիւն», «Արեւմուտք», եւայլն երկասիրութեանց

*«Ձեր սքանչելի պզտիկ գիրքը՝* **Ի՞նչ պէտք է գիտնայ դեռատի մանչ մը,** *պէտք էր որ գտնուէր ամէն տան մէջ, ուր դեռատի մանչ մը կայ։ Դուք արժանի էք բոլոր ծնողքներուն երախտագիտութեան։»*

*ԹԷՕՏՈՐ ՔՈՒԸԼԸՐ*

Լաւագոյն կենդանի կրօնական գրագէտ.
Հեղինակ բազմաթիւ երկասիրութեանց

*«Կը փափաքիմ ըսել Ձեզ թէ ո՞ր աստիճան կը գնահատեմ Ձեր պզտիկ գիրքը։ Անիկա իրաւամբ այն է, ինչ որ դեռատի մանչեր պէտք էր որ գիտնային, և որու մասին անգէտ մնալը պատճառ եղած է շատ մը վիշտերու, ցաւերու և յանցանաց։ Ի՞նչու համար այս գիրքը դարեր առաջ չէր գրուած։ Ո՜րքան ողբալի և սխալ է մարդկային շատոնց տեւական այն զգացումը, որ արգելք եղած է օր առաջ այդ ծանօթութեանց տարածուելուն։ Դուք Ձեր նիւթը ներկայացուցած էք սքանչելի փափկութեամբ և ճշդութեամբ ու միանգամ ընդ միշտ շնորհակալ եմ Ձեզ, այդ բանին համար։»*

*ՉԷՐԼԸՍ ԹՕՄՓՍԸՆ*

Նշանաւոր ամերիկացի քարոզիչ եւ անդամ «Բուց եկեղեցւոյ մանչէն» պարբերականի հրատարակչական մարմնին եւ հեղինակ

*«Միշտ զգացած եմ որ կեանքի ամէն բույլերուն մէջ ճշմարտութիւնը աւելի մաքուր և աւելի առողջարար է քան թէ որ և է ճնշում անոր վրայ կամ խեղաթիւրում։ Տոքդ. Սթօլի գիրքը* **Ի՞նչ պէտք է գիտնայ դեռատի մանչ մը,** *երեւան կուգայ այս գաղափարով։ Ցա-*

չողութեան մեծ գաղտնիքը, այնքան բարոյական և ֆիզիքական, որքան ընկերական և ճարտարարուեստական տեսակէտով, կը կայանայ բնու-թեան ճշմարտութիւնները մօտէն հասկնալուն և անոնց ձայնին ականջ դնելուն մէջ։ Այս գիրքը, գեռատի մարդը երես երեսի կը բերէ բնու-թեան հետ, անոր ամէնէն զանեկան և կարեւոր քայլերուն մէջ։ Ինծի համար հաճոյք մըն է այդ գիրքը ամէնուն յանձնարարել։»

ՍԹԻՆ.ԿԸՐ ԳՐՕՍՔԸՐ
Նշանաւոր ամերիկացի իրաւագէտ դատաւոր

«Ձեր գիրքը, Ի՞նչ պէտք է գիտնայ գեռատի մանչ մը, այն երկասիրութիւնն է, որուն մէջ իրողութիւնները և ճշմարտութիւնները ընտրելու և ներկայացնելու Ձեր կերպը վստահութիւն կը ներշնչէ ու փափուկ է, որով ոչ հակառակ ազդեցութիւն մը կ'ընէ և ոչ ալ կրնայ վնասել։»

ՃԷՅՄՍ ԷՎԸՐԻ ՈՒՕՐՏԸՆ
Ամերիկացի քարոզիչ եւ հեղինակ

«Կը խորհիմ թէ մեծարժէք բան մըն է որ դուք ըսած էք թէ Ի՞նչ պէտք է գիտնայ գեռատի մանչ մը։ Եւ ըսած էք զայն ա՛յնքան ուղղակի կերպով և ա՛յնպիսի եղանակով մը, զոր գեռատի մանչեր ապահովապէս պիտի ըմբռնեն։ Ուրիշ նոյն կարգի գիրքեր տարբեր բա-ներ ըսած են, բայց դուք ամբողջ նիւթը կը շօշափէք։ Զիս նկատեցէք իբր ամէնէն աւելի լաւ ընդունելութիւն ընողը այդ հատորներուն, որոնք ասոր պիտի յաջորդեն։ Դուք կրնաք վստահիլ իմ սրտագին յանձնարա-րութեանս, ի մասին ներկայ հատորին, եթէ առիթը ներկայանայ։»

ԷՏՈՒԸՐԴ ԲԱՔ
Տնօրէն «Կանանց տունին թերթը» ամե-րիկեան կարեւոր հանդէսին

«Այն խնդիրները որոնց մասին կը խօսուի Ձեր հրատարակութեանց մէջ, միշտ առարկայ են հարցմանց, և եթէ պատասխանը չի բղխիր մաքուր և իմաստուն շրթունքներէ, կ'ընդունուի մոլի և ապականած անձերու կողմէ։ Ես անո՛ր համար մեծապէս կը յանձնարարեմ Ձեր գրքերու շարքը, որովհետեւ գրուած է յստակօրէն և մաքուր կերպով, և կու տայ անհրաժեշտ տեղեկութիւնը առանց մղելու անմաքուր և զգա-յական կրքերու։»

ՎԵՐ. Ֆ. Պ. ՄԱՅԸՐ
Նշանաւոր անգլիացի քարոզիչ եւ հեղինակ

«Դուք վերին աստիճանի դժուարին խնդիր մը շօշափած էք, մեծ փափկութեամբ և իմաստութեամբ, խնդիր մը որ ամէնքս գրեթէ վախնա-

զաւալը է թանալ և որ սակայն պէտք է որ պարզուի մեծցող մանչուն, իր ծնողաց կողմէ, անկեղծ ու գործնական միջոցներով, զինքը զգաստութեան հրաւիրելու համար։ Ձեր գործը լաւ պատրաստուած է։»

ԵՊԻՍ. ՃՕՆ ՎԻՆՍԸՆԴ
Նշանաւոր ամերիկացի քարոզիչ եւ
դաստիարակ

«Կը խորհիմ թէ **Ի՞նչ պէտք է գիտնայ դեռատի մանչ մը**ն կոչուած է ամէնուն բարիք ընել։ Անկեղծապէս կը բաղձամ որ անիկա ներս մտնէ շատ մը տուներէ, ուր օրհնութիւն մը կրնայ ըլլալ։ Երկար ատենէ ի վեր կը զգամ թէ պէտք եղածը չենք ըներ զգուշացնելու համար մեր տղաքը կարգ մը դժուարութեանց հանդէպ, որոնք ապահովապէս իրենց դէմ պիտի ելլեն, եթէ անոնք կեանքի մէջ մտնեն։»

ԼԷՅՏԻ ՀԷՆՐԻ ՍԸՄԸՐՍԷԴ
Անգլիացի նշանաւոր մարդասէր տիկին

«Ձեր գիրքը կարդացի մեծ հետաքրքրութեամբ, որովհետեւ խորապէս համոզուած եմ թէ անհրաժեշտ է որ այսօրուան տղաքը պէտք է հրահանգուին։ Գալով ձեզ, ինչ որ դուք ներկայացուցած էք, ներկայացուած է այնպիսի եղանակով մը որ միտքը և մտածումները կը բարձրացնէ։ Իւրաքանչիւր ծնողք որ մանչ մը ունի, պիտի օգտուէր եթէ ուշադրութեամբ կարդար այս գիրքը և յետոյ խրատութիւնները հաղորդէր իր մանչուն կամ գիրքը մանչուն տար որ կարդար, և կամ Ձեր մեթոտը իր տղուն հրահանգման մասին իբր միջոց գործածէր։»

ԱՆԴՕՆԻ ՔԸՄԸՆՔՕԹ
Նշանաւոր ամերիկացի եկեղեցական
բարենորոգիչ

«Ձեր եղանակը, այնքան փափուկ նիւթ մը շօշափելու մասին, վերին աստիճանի իմաստուն է։ Թոյլ տուէք ինձ ըսել թէ Ձեր մեթոտը ճիշդ այն է, ինչ որ ես մէկ քանի տարի առաջ իմ տղուս վրայ գործադրեցի։ Ցիմար ու մեղսապարտ լռութիւն մը, շատ մը ծնողքներու կողմէ, պատճառ կ'ըլլայ որ իրենց տղաքը խիստ յաճախ անմաքուր ընկերներու բերնէն իմանան նուիրական ճշմարտութիւնը, բոլորովին աններելի եղանակով մը։ Ձեր գիրքը վերին աստիճանի յարգելի է ու յարգանք պիտի ներշնչէ։ Կը յուսամ թէ Ձեր գիրքը, շատ մը ծնողքներ իմաստութիւնը պիտի ունենան գործածելու։»

ՃՈՇՈՒԱ ՍԹՐՈՆԿ
Ամերիկացի ծանօթ հեղինակ

«Եթէ կայ բան մը զոր կրնամ ըսել նպաստելու համար որ Տոքթ. Սթօլի գիրքը, **Ի՞նչ պէտք է գիտնայ դեռատի մանչ մը**, աւելի կարդացուի, սա խօսքն է. «Կը փափաքիմ որ ամէն ծնողք ուշադրութեամբ կարդայ այս գիրքը, ապահով եմ թէ մեծ օգուտ պիտի ըլլայ անկէ։ Դիտաւորութիւնս է այս գիրքը բարձր ձայնով իմ տղոցս կարդալ։»

ԺՕՆ ՈՒԻԼԻՍ ՊԷՐ
Ծանօթ ամերիկացի քրիստոնէական գործիչ

«Եթէ աշխարհի մէջ գտնուող իւրաքանչիւր մայր և հայր կարդար Տոքթ. Սթօլի գիրքը և ըմբռնէր անոր հոգին, այն ատեն ուղիղ կերպով ապրելու պարագան շատ աւելի պիտի շահէր քան ուրիշ որ և է միջոցաւ մը։ Սեռային առնչութեանց ամէնէն փափուկ կէտերը շօշափուած են այնքան մաքուր և յստակ եղանակով մը և առանց որ և է բառի մը, որ չփափաքուած զգացում մը երբէք չարթննար ընթերցողին մէջ։ **Ի՞նչ պէտք է գիտնայ դեռատի մանչ մը**, մեծապէս գիտական է, հմայիչ պատմութեան մը չափ ընթեռնլի ըլլալով հանդերձ։ Ընտանեկան ոչ մէկ յարկ կատարեալ է առանց ատոր։

ՏԿՆ. ՖԼՈՐԻ ՊԱՐԼԹ
Նշանաւոր ամերիկացի գործիչ

«Խնամքով կարդացի **Ի՞նչ պէտք է գիտնայ դեռատի մանչ մըն** և ուրախութեամբ կը յանձնարարեմ զայն։ Ամէնէն փափուկ խնդիրներուն վրայ խօսած է այնպիսի իմաստութեամբ որ ամէնէն պահպանողականն ալ չի հակառակիր։ Կարճ գլուխները, լեցուն բնական ճշմարտութիւններով, զորս ամէն տղաք պէտք է գիտնան որոշ տարիքի մը մէջ, պիտի կարդացուին դեռատի մանչերու կողմէ, առանց իրենց մէջ անմաքուր մտածում մը յառաջ գալու, և յորդորները ընդդէմ վնասակար սովորութեանց և մտածմանց, անձնապաշտպանութիւն մը պիտի ըլլան իրենց համար։»

ՏԿՆ. ՄԷՐԻ ԼԻՎԸՐՄՕՐ
Ատենաբան եւ հեղինակ «Դարուն կինը», «Կեանքի պատմութիւնը» եւ այլ երկասիրութեանց

ԱՄԷՆ ՏԱՐԻՔԻ ԱՌԱՋՆՈՐԴ. — ԹԻՒ 2

ՍԻԼՎԱՆՈՍ ՍԴՕԼ
(Մատենագիր)

# Ի՞ՆՉ ՊԷՏՔ Է ԳԻՏՆԱՅ ԴԵՌԱՏԻ ՄԱՆՉ ՄԸ

*Անգլիերէնէ թարգմանեց*
ՄԻՔԱՅԷԼ ՇԱՄՏԱՆՃԵԱՆ



ՀՐԱՏԱՐԱԿԻՉ
ՕՆՆԻԿ ԱՐՋՈՒՄԱՆ

Կ. ՊՈԼԻՍ
ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ ՍԱԳԱԵԱՆ
Ղալաթա, Կուրշունլու խան, թիւ 7
1907

# ԶԵԿՈՅՑ

*1906ի տարւան վերջերուն, **ԱՄԷՆ ՏԱՐԻՔԻ ԱՌԱՋՆՈՐԴ** հատորներու շարքին առաջինը հրապարակ հանելով, մեր փափաքն էր որ այդ ձեռնարկին ութը հատորներն ալ օր մը հրատարակուած տեսնէինք։ Ուրախ ենք այսօր յայտնելու որ այդ շարքին երկրորդ հատորին հրապարակ ելլելը զմեզ քայլ մը եւս կը մօտեցնէ մեր փափաքին իրագործման։*

*Այս առթիւ շնորհակալութեան պարտք մը ունինք հանդէպ ընթերցող հասարակութեան, որ նպաստաւոր ընդունելութիւն մը ըրաւ մեր շարքին առաջին հատորին։ Յուսով ենք թէ նոյն նպաստաւոր ընդունելութիւնը չպիտի զլացուի նաեւ այս երկրորդ հատորին համար, որուն շուտով պիտի յաջորդէ երրորդ հատորը՝*

***Ի՞ՆՉ ՊԷՏՔ Է ԳԻՏՆԱՅ ԶԱՓԱՀԱՍ ՕՐԻՈՐԴ ՄԸ***

**ԹԱՐԳՄԱՆԻՉ ԵՒ ՀՐԱՏԱՐԱԿԻՉ**

1 *Մայիս*, 1907

# ՁՕՆՈՒԱԾ

*Այն հազարաւոր մանչերուն, որոնց պարկեշտ հարցումները, ի մասին կեանքի ծագման եւ գոյութեան, արժանի են ճշմարիտ, մտացի եւ գոհացուցիչ պատասխանի մը, փրկելու համար զիրենք տգիտութենէ, կարողութիւն տալով իրենց որ մոլութենէ հեռու մնան, եւ ազատելու՝ առանձնութեան ատեն եւ ընկերութեան մէջ գործուելիք յանցանքներէ:*



# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

# ԵՐԿՈՒ ԽՕՍՔ ԾՆՈՂՔՆԵՐՈՒՆ

Միայն սակաւաթիւ ծնողքներ կ'ըմբռնեն պարտականութեան այն բովանդակ հարկը, որ հանդէպ իրենց տղոց, կը ծանրանայ իրենց վրայ։ Մինչդեռ շատ քիչ ծնողքներ միայն իրենց տղոց սնունդ և զգեստ հայթայթելու մասին ունեցած պարտականութեանց մէջ կը թերանան, շատ է թիւը անոնց՝ որոնք կրթութեան, դաստիարակութեան և կարգապահութեան կարեւորութիւնը չեն ըմբռներ։ Շատեր ճիշդ գաղափար մը չունին իրենց պարտականութեանց վրայօք, ի մասին իրենց զաւակաց բարոյական դաստիարակութեան, և գրեթէ բոլոր ծնողքներ անհատական և ընկերային մաքրութեան տեսակէտով կը թերանան իրենց տղոց վրայ հսկելու։

Կան կարգ մը ծնողքներ ալ, որոնք անտարբեր չեն իրենց տղոց մաքրութիւնը անվթար պահելու պարտականութեան նկատմամբ, բայց չեն գիտեր թէ խնդիրը ի՞նչպէս կրնան լաւագոյն կերպով ներկայացնել անոնց։ Պէտք է աղէկ մը խնդիրը ըմբռնել, որպէս զի դարման մը տանելու տեղ աւելի վտանգաւոր մտածումներ ծնունդ չառնեն տղուն մատաղ մտքին մէջ։ Չգիտնալով թէ ի՞նչպէս պէտք է վարուիլ, շատ մը ծնողքներ՝ երեսի վրայ կը ձգեն ամբողջ խնդիրը և կը թողուն որ իրենց տղաքը ենթարկուին փողոցներու մէջ ապականարար կերպով մը լուսաբանուելու, տարէց ընկերներու գէշ թելադրութեանց և յաճախ ալ սպասաւորներու անսանձ կամ կրկին նուաստացուցիչ ազդեցութիւնները բոլոր այն մոլի մարդոց, որոնք հաճոյք կը զգան գեղանի պատանիներու մտքերը պղտորելով։ Այսպիսի ծնողքներ չեն անդրադառնար իրենց կուրօրէն գործած սխալներուն, և իրենց տղաքը կը թողուն նոյն վտանգներուն մէջ, որոնցմէ

թերեւս իրենք իրենց երիտասարդութեանը հազիւ թէ պրծած են, երբ պաշարուած էին այն խորհուրդով որ այնքան փորձիչ է տղոց համար, երբ այս վերջինները դեռ տգէտ են ամէն բանի։

Եթէ ամէն երկիրներու մէջ գտնուող ծնողքներ կարենային կարդալ այն նամակները, որոնք ինծի կը հասնին երկրագնտին ամէն կողմ գտնուած տղաքներէն, ոչ մէկ ծնողք պիտի կրնար այնքան անտարբեր մնալ եւ իրար չանցնիլ որպէս զի դիւրութեամբ կատարէ իր պարտականութիւնը եւ պատասխանատուութիւնը հանդէպ իր զաւակներուն, բանալով անոնց միտքը, մաքուր եղանակով մը, ի մասին խնդիրներու, որոնց ա՛յնքան պէտք կայ որ վերահասու ըլլան անոնք իրենց դեռահաս տարիքին։

Այսպիսի տղոց ու երիտասարդներու սովորական յանկերգն է. «Ինչո՞ւ համար ոչ մէկը չզգուշացուց զիս, ոչ մէկ բարեկամ կամ ուսուցիչ, ո՛չ մեր քահանան եւ ոչ մեր բժիշկը որ եւ է բառ մը ըսին այս մասին, զգուշացնելով զիս. հայրս եւ մայրս որոնք անշուշտ գիտէին ինծի սպառնացող վտանգին գոյութիւնը, անոր մասին ակնարկութիւն իսկ չըրին ինծի։ Փոխանակ ինծի ճշմարտութիւնը ըսելու եւ զիս զգուշացնելու, անոնք փորձեցին խաբել զիս եւ տգիտութեան մէջ թողուցին որ առանց զգուշանալու սխալ ճամբէ երթամ։»

Երիտասարդ մը կ'ըսէր. «Ծնողքս զգուշացուց զիս ծխախոտի եւ ըմպելիքի դէմ, զգուշացուց զիս հանդէպ խաղամոլութեան, սուտ երդումի, անպարկեշտութեան եւ գողութեան, յորդորեց զիս որ եկեղեցի երթամ եւ ինծի աղօթել սորվեցուց, խղճմտօրէն կատարեց իր պարտականութիւնը ուրիշ ամէն խնդիրներու մասին. միայն երբէ՛ք բառ մը չխօսեցաւ ինծի այն կարեւոր խնդրոյն վրայօք որ իմ կործանումս յառաջ բերաւ։» Շատ մը

Նամակագիրներ իրենց ծայրայեղութեան մէջ կ'ըսեն. «Ի՞նչպէս ես կրնամ երբեք ներել իմ ծնողացս այս մասին ունեցած սխալին և անփութութեան համար։»

Ոչ մէկ պարագայի ծնողքներ պէտք է անփոյթ գտնուին, ուսուցանելու համար իրենց տղոց ճշմարտասիրութիւն և պարկեշտութիւն, հաւատարմութիւն և սլատիւ, կամ զգուշացնել զիրենք արբեցութեան դէմ, թէեւ հազարաւոր տղաք ու աղջիկներ կան որոնք իրենց բնականէն վերոյիշեալ փորձութիւններէն ոչ մէկուն ենթարկուած են, մինչդեռ միւս կողմէ չկայ բնական պայմաններու մէջ միակ տղայ մը որ ուշ կամ կանուխ ենթական չըլլայ դժուարին փորձութեանց, կարգ մը յուզմանց և հակումներու պատճառաւ, որոնք հետզհետէ երեւան կ'ելլեն սա մեծ իրողութեան հետեւանքով թէ Արարիչը անսահման իմաստութեամբ մը մարմնին տուաւ մեզ մարդոցս, և ընկերութիւնը կազմակերպեց անանկ եղանակով մը, որպէս զի աշխարհիս մեծագոյն երջանկութիւնը կախում ունենայ երկու սեռերու տարբեր յատկութիւններէն։

Եթէ տղաք պէտք է որ զգուշացուին այն փորձութիւններէն, որոնք ընդհանուր և անխուսափելի են, և սխալանք ու մեղանչում վտանգաւոր կը համնին երբ պատանին տգիտութեան մէջ ձգուի առանց զգուշացման միակ բառի մը, հետեւաբար այս պարտականութիւնը ամէնէն առաջ կ'իյնայ ծնողքներուն։

Նախակրթարաններու դաստիարակներ, վարժարաններու ուսուցիչներ, փորձառու անձեր և բժիշկներ այս խնդրոյն մէջ իրենց պատասխանատուութեան բաժինը ունին։ Բայց անոնցմէ ոչ մէկը կրնայ այնքան լիապէս կատարել այս պարտականութիւնը, զոր իրերու բնական բերմամբ, Արարիչը դրած է այն երկու անձերուն վրայ, որոնց կը վստահի տղան, երբ կը պատրաստուի կեանքի

պատասխանատուութեան և պարտականութեանց կատարման ու Աստուծոյ ճանաչողութեան և իրեն նմաններու հետ իր ուղիղ յարաբերութեան գործին: Տղայ մը, որ իր ծնողքէն կը սպասէ սնունդ և բնակարան, զգեստ, դաստիարակութիւն և խորհուրդ, եթէ բանաւոր և ճիշդ կերպով չզգուշացուցուի և չի խրատուի անոր կողմէ, կեանքին ամէնէն նուիրական խնդիրներուն նկատմամբ, այդ պարագային նոյն բանը ուրկէ՞ պիտի սպասէ: Եթէ Աստուած մարդը և կինը ստեղծեց, իբր օժանդակներ Իրեն՝ ստեղծագործութեան գործին մէջ, որպէս զի մարդկային ցեղը շարունակուի, եթէ նա ամէնէն սրբազեղ, ամէնէն մաքուր, ամէնէն սրբազան և ամէնէն նուիրական յարաբերութիւնները դրաւ ընտանեկան յարկին տակ, ամուսնոյն և կնոջ միջև, այն ատեն ինչո՞ւ համար պէտք էր որ մենք չփոթէինք և ամօթի զգացումը զմեզ պատէր մեր տղոց ներկայութեան, երբ անոնք մեզի ուղղէին ամէնէն բանաւոր հարցումները մարդկային կեանքի ծագման մասին, ինչո՞ւ պէտք էր որ մենք, երբ առաջին և ամէնէն մեծ առիթը կը ներկայանայ, նոյն իսկ բոլորովին պզտիկներու հանդէպ, որոնք բնականօրէն և իրաւամբ իրենց ծնողաց կը դիմեն իրենց բանաւոր խորհրդածութիւններով և հարցումներով, ինչո՞ւ կ'ըսեմ ծնողքներ, պէտք էր որ մարդկային կեանքի այս ամենակարեւոր մէկ պահուն, փորձէին սուտ խօսիլ, բան մը որ միշտ ապարդիւն կ'անցնի; և բացարձակ վստահութեան մը վայրկեանին ամբողջ յառաջիկայ տարիներուն համար տղուն մէջ կը քայքայէ վստահութիւնը հանդէպ իր ծնողաց պարկեշտութեան և ուղղամտութեան: Ինչո՞ւ համար ծնողքներ ամէնէն յարմար մէկ վայրկեանին, երբ առիթը ներկայացած է, կը կորսնցնեն զայն, և կը խրտչեցնեն իրենց զաւակը երբ ան ամէնէն աւելի մօտութիւն ցոյց կուտայ իրենց: Այս-

պիտանները թէ՛ վարմունքով և թէ իրենց խօսքերով ասանկ մը կ՚ընեն որ տղուն այլ ևս վերստին բնաւ վստահութիւն չունենար իր ծնողացը վրայ: Ինչո՞ւ ծնողները պէտք էր որ կասեցնէին իրենց տղոց այն հետաքրքրութիւնը, զոր ընդհանրապէս պէտք էր մարզել, և այս կերպով մղէին զանոնք աւելի տարէց ընկերներու, տգէտ սպասաւորներու և ուրիշներու դիմելու, մտքի այն անուանի վիճակով մը, ուր ամէնէն նուիրական ճշմարտութիւնները, ամէնէն անմաքուր եղանակով մը ընդունելու պատրաստ են:

Եթէ դուն կը պահանջես որ քու տղաքդ պարկեշտ ըլլան քեզի հանդէպ, ինչու համար դուն պարկեշտ չես անոնց հանդէպ: Եթէ չես ուզեր որ անոնք քեզի խաբեն, ինչո՞ւ դուն կը փորձես խաբել զանոնք: Զարմանալի բան մը կա՞յ, եթէ քու տղաք զքեզ դուրս հանեն իրենց համար վստահելի անձերու շարքէն, և նոյն կերպով որով դուն սորվեցուցիր անոր խաբել, ինչո՞ւ համար ապականէիր ու փճացնէիր այն վստահութիւնը, զոր Արարիչը այնքան իմաստութեամբ իւրաքանչիւր տղու սրտին մէջ դրած է, հանդէպ իր ծնողաց ուղղամտութեան ու պարկեշտութեան:

Սա պարագան ալ բացայայտ է որ այն խաբկանքները զորս դուն փորձեցիր քու տղոցդ վրայ ի գործ դնել, չեն յաջողիր, այլ կը քանդեն անոնց վստահութիւնը և երբեմն իսկ անոնց հաւատքը իրենց ծնողաց վրայ: Այս մասին օրինակ մը տամ:

Մայիսի գեղեցիկ առաւօտ մը. չորս տարեկանի մօտ տղայ մը առանց ընկերի, ինքնիրենը մանրադատունկ խնձորի ծառի մը շուրջ, որ պարտէզին պատին մօտերը մեծցած էր, կը խաղար՝ ճիշդ այն միջոցին ճագարի ձագ մը ծակէն ելլելով իրեն մօտեցաւ. ճագարի ձագը խիստ փոքր ըլլալով չի կրցաւ տղուն ձեռքէն փախչիլ:

Իր նոր գտած գանձովը չափազանց ուրախացած, բնականաբար տղան՝ տուն՝ իր մօրը վազեց. ամբողջ օրը ուրախութիւնը կատարեալ էր. երբ իրիկուն եղաւ, հայրը խորհուրդ տուաւ տղուն որ կենդանիին տանի նորէն իր տեղը և գիշերը իր ծնողաց հետ ձգէ, և եթէ հետեւեալ առաւօտուն կանուխ նորէն պարտէզ երթայ, ճագարին ձագը հոն պիտի ըլլայ, և ինքը կարող է զայն նորէն տուն բերել և հետը խաղալ: Վստահութիւն ընող պզտիկ տղուն, հօրը խօսքերը բանաւոր թուեցան, բայց երեւակայեցէք տղուն հետեւեալ առտուան յուսախաբութիւնը, երբ ժամէ մը աւելի սպասելէ ետքը, իր մտքին մէջ սկսաւ ծագիլ այն գաղափարը թէ ինքը խաբուած էր հօրը կողմէ: Այս տղան հիմա մեծցած մարդ մըն է և մէկ քանի օր առաջ այս միջադէպը կը պատմէր, ըսելով թէ այդ վայրկեանին զգացած դառնութիւնը իր հօրը դէմ, չէր կրնար երեւակայուիլ, և այդ առթիւ որոշեց այլ եւս երբէք չի հաւատալ իր հօրը խօսքին, որ և է բանի մը մէջ:

Հօրը համար այնքան դիւրին բան մըն էր, և հաւասարապէս տղուն վրայ ալ պիտի ազդէր, և իր արդիւնքովն ալ անհամեմատ գոհացուցիչ պիտի ըլլար, եթէ տղուն մտքին մէջ պատկերացնէր ճագարին ծնողաց զգացած վիշտը, որոնք ամբողջ օրը դաշտին մէջ իրենց ձագին համար ասդին անդին գացին և չյաջողեցան զայն գտնել, յետոյ նոյն կերպով եթէ նկարագրէր անոնց զգացած անհուն ուրախութիւնը զոր պիտի զգային իրենց ձագին վերադարձը տեսնելով, մանաւանդ որ ձագը խիստ պզտիկ էր տակաւին և չէր կրնար իր մօրը քովէն զատ ուրիշ տեղ քնանալ: Ուստի ճիշդ այդ պատճառով պէտք էր որ իր պզտիկ բնակարանը վերադարձուէր: Այս տեսակ բացատրութիւն մը տղուն համար գորովի և մտածողութեան դաս մը պիտի ըլլար հանդէպ

կենդանական կեանքի՝ ամէն ձեւերու և ճշմարիտ աղ եղած պիտի ըլլար ու տղուն մտքին մէջ պիտի դնէր նաև սէր և վստահութիւն իր հօրը նկատմամբ։

Կրնայ ըլլալ որ ծնողքներ հարցնեն թէ ո՞րքան կանուխէն պէտք է որ լուսաբանեն իրենց տղաքը կեանքի և գոյութեան ինչպէս և իրենց մարմնոյն խնամքի խնդիրներուն նկատմամբ։ Ո՛ր ժամանակի մէջ ալ որ նուիրական հարցումները իրենց տղոց կողմէ իրենց կ՚ուղղուին, պէտք է որ միշտ պատասխանուին պարկեշտութեամբ, սակայն մեծագոյն մտացիութեամբ և խելացիութեամբ, խնդիր չէ թէ տղան որքան պզտիկ է։

Հռոմէական կաթոլիկ եկեղեցւոյ պատկանող հեղինակաւոր բարձրաստիճան անձնաւորութիւն մը խօսելով պզտիկներու կրօնական դաստիարակութեան վրայ, ըսած է. «Ինծի տուէք մինչեւ եօթը տարեկան տղաքը և անկից յետոյ դուք կրնաք սորվեցնել անոնց ինչ որ կ՚ուզէք, անոնք իմս են ընդ միշտ»։

Ահա այն բանը զոր ծնողքներ պէտք էր որ ընէին մաքրութեան խնդրոյն նկատմամբ, իրենց տղոցը պէտք եղածը սորվեցնելու համար։ Տղոց կեանքի առաջին տարիները ամէնէն կարեւորներն են, բայց փոխանակ այս կէտը նկատողութեան առնելու ծնողաց մեծ մասը կը հրաժարի տղոց որ և է բան մը ուսուցանելէ, նկատելով զանոնք չափազանց դեռատի, մինչեւ որ տասներկու կամ տասներեք տարեկան ըլլան և կրեն գէշ ազդեցութիւններ որոնք անոնց միտքերը ընդմիշտ կ՚ապականեն։ Տղու մը կեանքին առաջին եօթը տարիները ծնողաց համար մեծ կարեւորութիւն ունին, և անհրաժեշտ ուսուցման մինչեւ տղուն տասնեհինգ տարեկանը յետաձգումը ծնողքները կը հասցնէ ամէնէն վերջը անանկ կէտի մը, ուր այլ եւս բան մը չէ մնացած տղուն ըսելիք և վերարտադրութեան գործին հետ կապուած

ամէն նուիրական զգացում սրտէն, մեքենական կերպով փճացած է տղուն մէջ։

Հազարաւոր օրինակներ գիտեմ ուր երիտասարդներ փճացած են, որովհետեւ իրենց ծնողքները թերացած էին անոնց մատաղ հասակին մէջ զգուշացման պէտք եղած խօսքերը ընելու։ Երբեք չեմ հանդիպած մէկը որ փճացած ըլլայ, իր ծնողքին ժամանակէն առաջ անհրաժեշտը ըսած ըլլալուն համար, կամ թէ՝ ծնողքներ իրենց տղաքը զգուշացուցած ըլլալնուն նոյն իսկ այն պարագային՝ ուր հարկ եղածին պէս չեն կրցած այդ նիւթին վրայ խօսիլ, բայց գէթ իրենց կարողութեան չափովը ջանք ըրած են տղուն ամէն անհրաժեշտ իրողութիւն բացատրել։

Թէ որքան կանուխէն կեանքի ծագման խնդիրներու մասին պէտք է խօսք բացուի, արդէն կախում ունի տղէն և այն պայմաններէն որոնցմէ շրջապատուած է ան։ Եթէ տղան ապուշ մը չէ «ինչո՞ւն և ինչո՞ւ համար»ը, «ուսկի՞ց և դէպի ո՞ւր»ը պիտի զբաղեցնեն իր միտքը, երբ ան առաջին անգամ կը սկսի գիտակցութեամբ գործել։ Եթէ ծնողքներ կը կարծեն թէ այս հարցումները տղուն մտքին մէջ չեն ծնիր, մինչև որ տղան ութը կամ տասը տարեկան չըլլայ, շատ մեծ սխալ մը կը գործեն։ Կեանքի, կերպու ծագման և կեանքի աղբիւրին նկատմամբ եղած հարցումներ, տղու մը մտքին անդրանիկ հարցումներն են, և այն պարագային, ուր պայմանները կը թելադրեն ու հարցումը կ'ըլլայ տղուն կողմէ, պէտք է որ միշտ պատասխանուի պարկեշտօրէն, առանց նկատի առնելու թէ տղան քանի տարեկան է։

Բայց ինչպէս արդէն ըսի, պատասխանը ոչ միայն պարկեշտ պէտք է ըլլայ, այլ նաև մաքուր, ոչ միայն ճշմարիտ, այլ նաև խոհական, այդ պատասխանը պէտք

է ըլլայ այնքան կատարեալ, այնքան պարկեշտ եւ այնքան գոհացուցիչ, որ վստահութիւն ներշնչէ ազգին եւ հետաքրքրութիւնը գոհացնէ, փոխանակ խաբող ըլլալու եւ աւելցնելու հետաքրքրութիւնը ու տարակոյսը արթնցընելու։

Մանուկ մը իր կեանքին առաջին մէկ քանի ամիսներուն արդէն գաղափար կը կազմէ այն պայմաններուն մասին որոնցմէ շրջապատուած է, այն յարաբերութեանց նկատմամբ որոնցմով իր ծնողաց եւ ուրիշներուն կապուած է։ Առանց առաջուընէ որ եւ է բանի մը կամ լեզուի մը մասին ծանօթութիւն ունենալու, մանուկը կը սորվի բառերուն իմաստը եւ կը սորվի խօսիլ այն լեզուն զոր կը լսէ, նոյնիսկ աւելի շուտ քան երեսուն կամ քառասուն տարեկան մէկը պիտի կրնար օտար լեզու մը նոյնքան ժամանակի մէջ եւ ամէնէն նպաստաւոր պայմաններու տակ սորվիլ։ Մանուկ մը օտար լեզու մը սորվելու մէջ ոչ միայն կը գերազանցէ իր ծնողքը, այլ կարող կ'ըլլայ իւրացնել արտասանութիւնը այնքան ճշդութեամբ որ իր ծնողաց համար բոլորովին անկարելի է։

Մանուկը աշխարհ կուգայ առանց որ եւ է ծանօթութիւն ունենալու այն առարկաներուն եւ անձերուն նկատմամբ որոնցմէ շրջապատուած է։ Իր միտքը տակաւին որ եւ է տպաւորութիւն չէ կրած եւ մաքուր է կատարելապէս, բայց լուսանկարչական զգայուն թիթեղին նման պատրաստ է ամէնէն պզտիկ տպաւորութիւններն անգամ առնելու։ Մանկութեան միջոցին տպաւորութիւնները պարզ լուսանկարչութիւններ չեն միայն իր մտքին վրայ, այլ այնքան խորունկ եւ տեւական որ կարծես թէ մտքին մէջ քանդակուած, դրոշմուած ըլլային։ Մանկութիւնը այն ժամանակն է, երբ մտածում եւ զգացում կը դրուին հոգւոյն մէջ, այնպէս որ անոնք ոչ կրակով կրնան այրիլ եւ ոչ ալ ջուրով մաքրուիլ, այլ

մինչեւ վերջը կը տիրեն իր տղուն էութեան կարեւոր մէկ մասը։ Ուրեմն, շատ կարեւոր է որ տղու մը առաջին ըմբռնումը և նախնական ծանօթութիւնը կեանքի ամէնէն նուիրական պաշտօններուն և յարաբերութեանց նկատմամբ, այնպէս մը ըլլան որ անոր մտածումը բարձրացնեն վերարտադրող բնութեան նկատմամբ, դէպի այն մաքուր ու սրբազան տեղը, ուր զայն դրած է Արարիչը երբ ստեղծեց մարդը և կինը և անսահման իմաստութեամբ մը օժտեց զանոնք կարողութիւններով։

Ապահովապէս վեր է ամէն կասկածէ թէ ծնողքը այս խնդրոյն մէջ, հանդէպ իր տղուն, պարտականութիւն մը ունի։ Այն հարցումը սակայն թէ՝ այս խնդիրը ի՛նչպէս հարկ է ներկայացնել, ի՛նչ պէտք է ըսել և ի՛նչպէս պէտք է ըսել, ամէնէն կարեւոր բանն է։ Ահա այս գիրքին գրուելուն նպատակը, որ է օգնութիւն մը ընել ծնողքներուն, այս կէտին մէջ։ Ամէն երկիրներու մէջ գտնուող հազարաւոր ծնողքներ գործածեցին այս գիրքը գոհ մնալով և յաջողութեամբ, և հեղինակը տակաւին միակ օրինակին ալ չի լսեց, թէ այս գիրքին մէջ բովանդակուած տեղեկութիւնները, ամէնէն գոհացուցիչ արդիւնքներէ տարբեր ազդեցութիւն մը ունեցած ըլլան տղուն վրայ, ոչ ալ երբէք լսեց թէ այդ տեղեկութիւնները առիթը տուած ըլլան տղոց կողմէ չփոթեցուցիչ հարցումներու, որոնցմէ այնքան կը վախնան ծնողքները։

Անհրաժեշտ է որ ծնողքներ ամէն բանէ առաջ խնամքով և խորհելով կարդան հետեւեալ կարճ գլուխները, նաև պէտք է որ ծնողքներ ամբողջ նիւթին վրայ ուղիղ գաղափար մը կազմած ըլլան, և գիտնան թէ այդ խնդիրներու մասին ինչ պէտք է սորվեցնել տղուն։ Այս գիրքը կարդալէ վերջը լաւագոյն կերպով պիտի կրնան դատել թէ պէ՞տք է զայն տղոց ձեռքը

տալ, թէ ոչ ամէն օր կամ իրիկուընէ իրիկուն մաս մաս կամ մէկ անգամէն մէկ գլուխ տղուն կարդալ։ Այն ընթացքը, որուն ծնողքներ պէտք է հետեւին, մեծապէս կախում ունի տղուն տարիքէն և ուրիշ նկատումներէ, որոնց լաւագոյն դատաւորները նոյն իսկ ծնողքները կրնան ըլլալ։

Այն մեծագոյն վտանգը, որուն ենթակայ են ծնողքներ, իրենց պարտականութեանց մէջ թերանալն է, խորհելով թէ թէեւ ուրիշ տղաք պէտք ունին այդ տեսակ տեղեկութեանց, բայց իրենց տղաքը տակաւին ոչ։ Այսպէս խորհելով ամէն ծնողք կը սխալի։

Ձեր տղոց սպառնացող փորձութիւնները և վտանգները այնքան առարկայական չեն, որքան ենթակայական, այնքան դուրսէն չեն գար, որքան ներսէն են։ Ձեր տղաքը անտարակոյս արդէն այս խնդիրներու մասին այնքան բան գիտեն, որքան դուք երբէք չէք երեւակայեր, և մեծագոյն վտանգը այն է որ անոնք այդ նուիրական բաները արդէն անմաքուր եղանակով մը կրնան սորված ըլլալ։ Եթէ դուք փորձած էք խաբել ձեր տղաքը, հաւանական է որ անոնք ալ հետեւին ձեր օրինակին և փորձեն խաբել ձեզ։ Եթէ դուք փորձած էք այս խնդիրներու մասին ճշմարտութիւնը ծածկել, հաւանական է որ ձեր տղաքն ալ նոյն ընթացքին հետեւելով ձենէ պահեն ճշմարտութիւնը։ Խաբէութիւնն է որ ի գործ կը դրուի թէ՛ ձեր և թէ ձեր տղոց կողմէ։ Բայց եթէ կ'ուզէք ուղղամտութեամբ վարուիլ ձեր տղոց հետ և կը փափաքիք որ ձեր տղաքն ալ ձեզի հետ ուղղամտութեամբ վարուին, շատ հաւանական է որ դուք պիտի զարմանաք տեսնելով թէ ձեր տղաքը ուրիշներէ և հաւանաբար պղտոր աղբիւրներէ որքան բան սորված են։

Եթէ ծնողքներու ուղղեալ այս մէկ քանի խօսքերուն մէջ եղած թելադրութիւններուն հետեւելով, ձեր

տղոց մասին գոհացուցիչ արդիւնքներ ձեռք անցնէք, այդ առթիւ հաւանաբար ուրիշ հազարաւոր ծնողքներու ալ նոյն փորձառութիւնը պիտի ունենան, որոնք հետեւեցան վերոյիշեալ թելադրութեանց, և ասով ապահոված պիտի ըլլաք նաև ուրիշ բազմաթիւ վերին աստիճանի գոհացուցիչ արդիւնքներ։

Նախ ձեր տղաքը վստահութեամբ պիտի ընդունին այն իրողութիւնը թէ իրենց հետ ուղղամտութեամբ կը վարուիք։ Այս էջերուն մէջ տրուած տեղեկութիւնները կատարելապէս գոհացուցիչ պիտի ըլլան, և եթէ անոնք պէտք եղած կերպով հաղորդուին, կանուխէն վերջ մը պիտի տրուի վերարտադրող կեանքի նկատմամբ բոլոր անմաքուր և չփաթեցուցիչ հարցումներուն։ Ձեր տղաքը ձեզ պիտի կապուին այնպիսի գորովով մը, որուն նմանը առաջ երբէք չէիք տեսած։ Ձեզ պիտի նկատեն իբր իրենց գաղտնապահ մտերիմը և ազատութեամբ պիտի խօսին ձեզի հետ բոլոր այն խնդիրներուն վրայօք, զորս ուրիշ տղաք և ուրիշ անձեր ըսած են, ու ասով կարող պիտի ըլլաք զիրենք իմաստութեամբ այս և ուրիշ խնդիրներու մէջ առաջնորդելու։ Սա իրողութիւնը երեւան պիտի գայ թէ տղաք այնքան իրենց ծնողաց ամէն բան պիտի հաղորդեն, որքան անկից առաջ ամէն բան գաղտնի կը պահէին։ Եւ ուրիշ ամենագոհացուցիչ արդիւնք մըն ալ պիտի ըլլայ սա որ, երբ ձեր տղաքը տեսնեն թէ դուք ճշմարիտ աղբիւրն էք ուղղամիտ և գոհացուցիչ տեղեկութեանց, բնականաբար պիտի հեռանան ուրիշներու կողմէ տրուած մասնակի, անմաքուր կամ անգոհացուցիչ պատասխաններէ և այս խնդիրներու մասին պիտի խօսին ձեզի հետ, իբր իրենց միակ և լաւագոյն վստահելի աղբիւրը ծանօթութեանց։

Այս գրքին մէջ բովանդակուած տեղեկութիւնները անոնք են զորս դեռատի մանչ մը պէտք է գիտնայ,

մինչև որ իր տանտիկնոջը կամ տանտիրոջը տարեկանին հասնի։ Այս հատորին շարունակութիւնը պէտք է ըլլայ ուրիշ մը, նոյն խնդիրներուն վրայ խօսող, այսինքն «Ի՞ՆՉ ՊԷՏՔ Է ԳԻՏՆԱՅ ԵՐԻՏԱՍԱՐԴ ՄԸ»։ (*)

Ինչպէս չափահասներուն, նմանապէս երիտասարդներուն միտքը պէտք չէ որ առանց պատճառի և ժամանակէ դուրս այս խնդիրներով զբաղի, և բնաւոր հարցումներու փոխարէն ուղղամիտ պատասխաններ տրուելուն ամէնէն կարևոր պատճառներէն մէկն ալ այս է, և ասիկա անանկ լաւագոյն եղանակով մը, որ բնաւ տարակոյսի տեղի չի տրուի և գոհացնէ բնական և բանաւոր հետաքրքրութիւնը և մտքին հանգստութիւն տայ։

Երբ ծնողքներ վերահասու ըլլան յետագայ էջերու բովանդակութեան արժէքին, պիտի ուզեն որ ուրիշ ծնողքներ ալ անոր բնութեան և արժէքին նկատմամբ տեղեկութիւններ ունենան, այս գրքէն սորվելով իրենց տղոց ուղիղ կերպով պէտք եղածը սորվեցնելու միջոցները։ Անոնք որոնց համար կարևորութիւն ունի այս տեսակ խնդիրներու մէջ անհատին և ընկերութեան մաքրութիւնը, պիտի գտնեն նաև կարգ մը աժան գրքոյկներ ու տետրակներ (**), որոնք նմանապէս ներկայ գրքիս հրատարակչին կողմէ հրատարակուած են ու պիտի հրատարակուին, և որոնց մեծ արժէքը կը կայանայ երկու սեռէ երիտասարդներու և տարեցներու, ակնարկուած խնդիրներու մասին ամէն բան ուղիղ կերպով սորվեցնելու մէջ։

Եթէ դուք կը փափաքիք յաջողապէս ձեր տղոց որ և է տարափոխիկ հիւանդութենէ մը պաշտպանել, չէք սպասեր հանդարտութեամբ որ վտանգաւոր ախտը

(*) Հաւանաբար 1908 տարւոյ ընթացքին հրատարակելի։ Ծ. Թ.

(**) Այս տետրակներէն Անդրկան Վտանգը, անցեալ տարի հրատարակուած է արդէն։ Ծ. Թ.

ձեր դուռը համնի։ Նմանապէս պէտք չէ որ սպասէք այնքան, մինչեւ որ ձեր մօտ և ձեր բարեկամներու տուներուն մէջ ապականութիւնը մտնէ և դուք ստիպուիք ձեր տղաքը այդ ապականութենէն ազատել։

Ծնողքներ ոչ միայն պէտք է որ մաքուր ու յարմար եղանակով մը իրենց տղաքը վերահասու ընեն այն ծանօթութեանց, զորս անոնք նոյն իսկ ամէնէն ստորնացուցիչ ձեւով մը որ և է տեղէ մը կրնան ստանալ, այլ այս բանը պարտաւոր են ընել իրենց տղաքը ազատելու համար ամէնէն ապականարար ազդեցութիւններէ, գոհացնելով անոնց բնական և օրինաւոր հետաքրքրութիւնը, և պարտաւոր են նաև ուշադրութիւն ընել որ տղուն բարոյական զգացումները վայելեն այն խընամքները, որոնցմով փորձութեան ժամերու մէջ տղան կարենայ ինքզինքին օգնել։ Ինչպէս որ բարոյական դաստիարակութիւնը չի կրնար գիտական և բնական ծանօթութեանց տեղը բռնել, նոյնպէս ալ այդ ծանօթութիւնները բաւական չեն զմեզ պահելու և պահպանելու համար, վերոյիշեալ խնդիրներու մասին կուրօրէն կատարուած սխալներէ և տխուր հետեւանքներէ։ Կեանքի գոյութեան մասին անհրաժեշտ բոլոր ծանօթութիւնները և սկզբունքներն ալ պէտք է զօրացուցուին և պահպանուին տղուն մէջ, կազմելով զօրաւոր բարոյական հոգի մը։ Այս երկու միջոցներով, դեռատի մանչ մը կրնայ վստահիլ թէ՝ փորձութեան ժամուն և վտանգի օրերուն չպիտի կորսուի։

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Երբ տակաւին տղայ մըն էր Ներկայ Էջերուն հեղինակը, կը զգար պէտքը ճիշդ այսպիսի գիրքի մը։ Տարիներ վերջը, ուսանող եղած ատեն, ու յետոյ աւելի վերջերը երբ գործօն երէց մըն էր՝ կը զգար պէտքը մաքուր, զուտ, բայց ամբողջական եւ ճշմարիտ գիրքի մը, որ երիտասարդներու ուղղուած ըլլար։ Այս պէտքը տեսնելով գիրքիս հեղինակը՝ որոշեց ի գլուխ հանել այդ դժուարին գործը, Ինքզինքը նուիրելով այս այնքան փափուկ ձեռնարկութեան։ Այս նպատակին իրագործման համար ո՛չ ժամանակի սղութիւն, ո՛չ բազմատեսակ պարտականութիւններ արգելք եղան որ դեռատի մանչերու համար գիրքի մը ձեռագիրը ի գլուխ ելլէր։ Առիթը ներկայացաւ իրեն որ պատրաստէ եւ նուիրէ դեռատի մանչերուն այն մտածումը որ այս հատորին մէջ ամփոփուած է։

Թէ այսպիսի գիրքի մը պէտք կա՞յ, ոչ մէկը կրնայ ժխտական պատասխան մը տալ, եթէ յիշէ իր տղայութիւնը կամ եթէ խնամով դիտէ այսօրուան տղաքը։ Թէ որքան յաջողած է հեղինակը իր փափուկ եւ դժուարին գործին մէջ, պէտք է ուրիշներ դատեն զայն։ Ինչ բանի մէջ որ չէ յաջողած, կը յուսայ որ ուրիշներ պիտի տեսնեն թէ այդ թերին ոչ մէկ կերպով զուտ ու սրբազան նպատակի մը չգոյութեան հետեւանքն է։

Ծնողքներ եւ գրական քննադատներ թող միտք բերեն որ այս գիրքը դեռատի մանչերու ուղղուած է. լեզուն մասնաւոր կերպով պարզ է. եւ որպէս զի կարեւոր խնդիրները աւելի տեւականօրէն մտքերնու մէջ տպաւորուին, ոչ միայն ի բաց ձգած ենք կարգ մը բացատրութիւններ որոնք մեր ըսածները պարզելու տեղ աւելի կը խճողեն, այլ մասնաւորապէս ջանք ըրած ենք նոյնիսկ կրկնութիւնները աչք առնելով, վերյիշելու ատենը անգամ մը գլխաւոր իրողութիւնները, երբ այդ բանը անհրաժեշտ թուած է մեզ։

Այս գիրքը սահմանուած է տղոց ձեռք տրուելու, որոնք թերեւս տարիքով բաւական յառաջացած են եւ կրնան առանձին կարդալ կամ թէ կրնայ հայրը կամ մայրը զայն կարդալ տղուն։ Երբ ծնողք մը կը վախնայ որ իր տղան շփոթեցուցիչ հարցումներ կ'ընէ, տեղն է ըսել թէ հաւանական չէ որ այդ տեսակ բան մը պատահի, եւ նոյնիսկ եթէ նմանօրինակ հարցումներ տեղի ունենան, բաւական է ըսել տղուն թէ եթէ մինչեւ գիրքին աւարտը համբերէ, անտա—

րակոյս իր բոլոր հարցումներուն վրայօք պատասխան ստացած պիտի ըլլայ: Թէեւ այս գիրքը մասնաւորապէս պզտիկ տղոց համար գրուած է, սակայն այնպէս կը կարծենք թէ անիկա հաւասարապէս շահեկան է թէ արանց եւ թէ կանանց համար, ըլլան անոնք երիտասարդ կամ տարէց:

Կը զգանք թէ մեր նիւթին առանձին հատորներու բաժնուած ըլլալը, թէ՛ ոճով եւ թէ բովանդակութեամբ տղոց եւ արանց կեանքի տարբեր շրջաններուն եւ պայմաններուն յարմարցուիլը պիտի նպաստէ իւր լաւագոյն բանիրէն մէկը որ երբէք նմանօրինակ երկասիրութեանց մէջ մտցուած ըլլայ: Զափահաս մարդոց միայն սահմանուած ծանօթութիւններ պարունակող գիրք մը, տղու մը ձեռքը տրուիլը այնքան բացայայտ սխալ մըն է որ վեր է ամէն կասկածէ: Ներկայ ձեռնարկի հատորներուն վերջինները հիմնուած են իրենցմէ առաջ եղած հատորներուն ծանօթութեանց վրայ, սակայն ինքնին այդ հատորներէն ոչ մէկը միւսէն կախում ունի:

Երբ այս գիրքը գործածէք տղոց իրական պէտքերը եւ արժանի ըլլայ ծնողաց սրտագին գնահատման, հեղինակը արդէն հասած պիտի ըլլայ նպատակին որ եղած է իր ներշնչման պատճառը:

Ֆիլատելֆիա ՍԻԼՎԱՆՈՒՍ ՍԴՕԼ

# ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

*Մէկ ամիսէն աւելի, ամէն իրիկուն մէկ քանի վայրկեաններ Հրանտ ուշադիր ունկնդիրը եղաւ* **Խօսքեր ազնուականի մը տղուն** *գիրքէն ընթերցումներուն։ Անկէ վերջ օր մը իրիկուան դէմ երբ դպրոցէն տուն վերադարձաւ, տեսաւ որ սենեակին մէջ մօրը տեղը օտար ու տարիքոտ կին մը նստած էր, գիրկը պզտիկ երախայով մը, որուն համար ըսուեցաւ թէ իր պզտիկ քոյրն էր։ Խելացի ու խոհական տղայ մը ըլլալով, անբնական բան մը չէր եթէ հաճոյքի և շփոթութեան ներհակ զգացումներով տոգորուած, գաղտուկ մը իր մօրը սենեակը երթար և հարցնէր անոր առանձին եղած ատենը թէ «երախան ո՞ւսկից եկաւ»։*

*Ծնողքը Հրանտի գրքերուն հեղինակին դիմեց, իր հարցումին պատասխանը գտնելու որ ահաւասիկ.—*

**Սիրելի բարեկամս Հրանտ,**

*Ստացայ մօրդ նամակը որով կը խնդրէր ինծմէ ձեր քով գալ և կարճ խօսքերով պատմել քեզ թէ ի՛նչպէս Աստուած ստեղծեց ամէն բան որ աշխարհի վրայ կ՚ապրի։*

*Հեռաւորութիւն և ուրիշ պարագաներ անկարելի կը դարձնեն անձամբ գալս և հայրդ ընդունեց որ կրամոֆոնը ամէն իրիկուն իր աշխատութեան սենեակէն ձեր նստած սենեակը բերուի, որպէս զի դուն կարող ըլլաս մտիկ ընել պատմուածքի մը, որ իմ աշխատութեանս սենեակը դրուած կրամոֆոնին մէջ խօսուած է։ Ահաւասիկ կը ղրկեմ առաջին ձայնաթիթեղը, պիտի աշխատիմ յստակ կերպով խօսիլ որպէս զի դժուարութիւն չունենաս հասկնալու և պիտի փորձեմ*

գործածել յստակ ու կարճ բառեր այնպէս որ քու տարիքդ տղայ մը գիտնայ և ճշմարիտ ու գոհացուցիչ պատասխանը ստացած ըլլայ իր հարցումին։

Երբ մօրդ նամակը հասաւ, նոյն նիւթին վրայ երիտասարդներու ուղղեալ գիրք մը գրելու զբաղած էի և քու հարցումդ այս պատճառաւ իմ ներկայիս ունեցած գաղափարներուս հետ աղէկ կը յարմարի։

Կը ղրկեմ առաջին ձայնաթիթեղը ներկայ բացատրական տողերով, Թող Աստուած օրհնէ զքեզ ու մաքուր և բարի մարդ մը ընէ։

Ֆիլատէլֆիա

Անկեղծ բարեկամդ
ՍԻԼՎԱՆՈՒՍ ՍԴՕԼ

# ԱՌԱՋԻՆ ՄԱՍ

## Աստուծոյ նպատակը՝ բոյսերը, կենդանիները եւ մարդը վերաստեղծող գործարաններով օժտելուն մէջ:



# Ի՞ՆՉ ՊԷՏՔ Է ԳԻՏՆԱՅ ԴԵՌԱՏԻ ՄԱՆՉ ՄԸ



## ԱՌԱՋԻՆ ՋԱՅՆԱԹԻԹԵՂ



*Կեանքի ծագման խնդիրը՝ բնական եւ անձնական. — Ես, դէպ ի սկիզբը երթալ.—Արարչագործութեան պատմութիւնը Ծննդոց Գիրքին մէջ. — Շինելուն եւ ստեղծելուն տարբերութիւնը. — Աստուած ամէն բան ստեղծեց ոչինչէն. — Մէկ քանի առարկաներէ առաւ Աստուած ուժը ուրիշներ արտադրելու համար. —Ուրիշներու մէջ դրաւ վերարտադրող ուժ. — Այս ուժը շատ կը նմանի ստեղծագործող ուժին:*

**Սիրելի բարեկամս Հրանտ,**

*Այն հարցումը զոր դուն ըրիր, մէկն է այն հարցումներէն, զոր ամէն այր ու կին, ամէն մտացի մանչ ու աղջիկ և նոյն իսկ ամէնէն դեռատի մանուկը ըրած է ինքզինքին կամ ուրիշներու, գիտնալ ուզելով թէ ո՞ւսկից և ի՞նչպէս աշխարհ եկած է: Այդ հարցումը թէ՛ բնական է և թէ իրաւացի, և ամէն խոհական անձ իրաւունք ունի սպասելու պատասխանի մը որ ճշմարիտ ըլլայ, և միեւնոյն ժամանակ այնպիսի լեզուով մը ըսուի, որուն իմաստը դիւրաւ հասկցուի:*

*Ապահովաբար բաղդաւոր է այն տղան որ խելացի ծնողք մը կամ հաճոյակատար բարեկամներ ունեցած է, որոնք իր այդ հարցումին ուղղամիտ և գոհացուցիչ պատասխան մը տուած են, ու ատով իր միտքը աղտո*

մնացած է չար ազդեցութենէն այն կեղծ ու տգեղ զգացումներուն, որոնք այնքան տարածուած են տգէտ մարդոց և տղոց մէջ։

Եթէ հարցուէր թէ ուրկէ՞ ծագում առած են շոգեկառքը և շոգենաւը կամ թէ հեռագիրը ու հեռաձայնը, ամէնէն խելացի կերպը պիտի թուէր մեզի՝ լաւագոյն կերպով նիւթը բացատրելու և այդ մասին ամէնէն գոհացուցիչ պատասխանը տալու համար, դէպ ի ետ երթալ մինչեւ վերոյիշեալ գիւտերու սկիզբը և նայիլ թէ Ճօրճ Սթէֆընսըն և Րոպէրդ Ֆուլթըն, Պէնժամէն Ֆրանքլին և Սամուէլ Մօրս, Կրահամպէլ և Թօմաս Էտիսըն ինչեր ըրած են զարգացնելու և կատարելագործելու համար իրենց այդ օգտակար գիւտերը։ Ասպահովաբար այս կերպով է որ ամէնէն կատարեալ գաղափարը պիտի տայինք ամբողջ նիւթին նկատմամբ։

Որպէս զի նոյն եղանակով, կարենանք լաւագոյն կերպով պատասխանել այն հարցումին թէ «Ուրկէ՛ կուգանք մենք», պէտք է որ երթանք դէպ ի ետ և հարցընենք թէ ուրկէ՞ եկաւ Ադամ առաջին մարդը և Եւա առաջին կինը։ Անշուշտ դուն արդէն գիտես թէ Աստուած ստեղծեց Ադամն ու Եւան. կարդացած ես արդէն այն գեղեցիկ ու հրաշալի պատմութիւնը որ Աստուածաշունչի առաջին էջին վրայ կը գտնուի. բայց այս հրաշապատում պատմուածքին մէջ շատ մը բաներ կան որոնք քու ուշադրութենէդ վրիպած են, ուրեմն քիչ մը միասին աչքէ անցընենք այդ պատմուածքը։

Եթէ առաջին տողէն սկսինք, կը տեսնենք հոն սա խօսքը. «Սկիզբէն Աստուած երկինքը և երկիրը ստեղծեց.» արդ, ահագին տարբերութիւն մը կայ որ և է բան մը ստեղծելուն և շինելուն մէջ։ Օրինակի համար, երբ հիւսն մը տուն մը կը շինէ, անիկա պարզապէս իրարու քով կը բերէ փայտերը, աղիւսները, կիրը, աւազը,

դամը և ուրիշ նիւթեր, ու սանցմով չէնքը կը բարձրացնէ։ Երբ գործը աւարտած ըլլայ հիւսնը, չենք կրնար ըսել թէ անիկա բան մը ստեղծեց, որովհետեւ ան՝ պարզապէս առած է այն առարկաները որոնք ասկից առաջ գոյութիւն ունէին և զանոնք իրարու քով բերելով շինած է բան մը զոր տուն կը կոչենք։ Բան մը չստեղծեց ուրեմն, այլ բան մը շինեց։

Գալով Աստուծոյ, Անոր ըրածը այսպէս չէ։ Սկիզբէն, երբ Աստուած ամէն բան ստեղծեց, չկային ո՛չ ապառաժներ, ո՛չ հող և ո՛չ ալ որ և է նիւթեղէն, որոնցմով կարենար շինել աշխարհը։ Աստուծոյ զօրութիւնը և իմաստութիւնը անսահման էր և փոխանակ նիւթեղէններ գործածելու, կամ նոյն իսկ իր նպատակը ի գլուխ հանելու համար նիւթեղէններու պէտք ունենալու, Ան արարչապէս հրամայեց և հրամանը անմիջապէս կատարուեցաւ։ Անվերջ ու թանձր մութ մը կը տիրէր. Աստուած ըսաւ պարզապէս «Թող լոյս ըլլայ» և լոյս եղաւ։ Երկրորդ օրը Աստուած ստեղծեց երկինքը և յաջորդաբար ամէն ինչ որ աշխարհիս վրայ գոյութիւն ունի, ամէն ինչ որ ջուրին մէջ կը լողայ և օդին մէջ կը թռչի և ամէն ինչ որ երկնքի մէջ կը շողայ։

Իր ստեղծագործութեան արդիւնքներէն ոմանց, Աստուած տուաւ ուժը ինքզինքին նման ուրիշներ յառաջ բերելու, որոնք գիտուններու կողմէ կը կոչուին գործարանաւոր էակներ. կան ուրիշներ ալ, որոնց՝ անգործարանաւոր նիւթեր անունը կուտան գիտունները, ինչպէս արեւը, լուսինը, աստղերը, ապառաժները, լեռները, ովկէանոսները եւայլն, որոնց ուրիշներ յառաջ բերելու ուժը չէ տրուած։ Այս վերջինները ստիպուած են մնալ նոյնը, մինչև որ Աստուած քայքայէ զանոնք և արդէն անհրաժեշտ ալ չէ որ իրենց նման ուրիշներ արտադրելու զօրութիւնը ունեցած ըլլային։ Եթէ ուրիշ աշխարհ-

ներու պէտք ըլլար, Աստուած կը նախընտրէր զանոնք անձամբ ստեղծել. բայց ուրիշ իրեր զորս գիտունները գործարանաւոր մարմիններ կը կոչեն, այսինքն իրեր որոնք կեանք ունին ինչպէս բոյսերը, ծառերը, ձուկերը, թռչունները, կենդանիները և մարդիկ, ասոնք յարատև կերպով չեն մնար, այլ կ'ապրին միայն ժամանակի մը համար ու յետոյ կը մեռնին ու կ'անցնին: Արդ, քանի որ ասոնց վիճակը ա՛յս է, ուրեմն Աստուած կրնար երբեմն նորէն ուրիշներ ստեղծել, որոնք իրենցմէ առաջիններուն տեղը անցնէին, այնպէս որ կեանքը աշխարհի վրայ շարունակուէր: Բայց Աստուած աւելի խելացի և լաւագոյն միջոց մը գտած է և անսահման իմաստութեամբ և սիրով իր ստեղծած մարմիններուն և արարածներուն տուած է՝ իրենց նման ուրիշներ վերարտադրելու զօրութիւնը, որ ստեղծագործելու զօրութիւնը չէ, ինչպէս Աստուած այնքան հրաշալիօրէն և խորհրդաւոր կերպով ըրած է, այլ զօրութիւն մըն է անիկա որ շատ մը կէտերու մէջ խիստ կը նմանի միւսին և զոր իր ամէնէն խորունկ խորհրդաւորութեանը մէջ տակաւին երբեք լիապէս հասկնալ կամ բացատրել չեն կրցած, նո՛յն իսկ ամէնէն իմաստուն մարդիկ: Զօրութիւն մըն է կեանք տալը, իրեն նման ուրիշներ ստեղծելը:

Անիկա, սիրելի Հրանտ, այն հրաշալի նիւթն է, զոր դուն և ես որոշած ենք ուսումնասիրել լրջօրէն: Որպէս զի խելացի և գոհացուցիչ պատասխան մը տանք այն հարցման թէ «Ո՞րկէ եկած ենք մենք և ամէն մարդ որ այս աշխարհի վրայ կը բնակի», անհրաժեշտ է ուսումնասիրել Աստուածաշունչի մէջ արարչագործութեան մասին եղած պատմութիւնը քիչ մը աւելի մանրամասնութեամբ, քան որ պիտի ընենք վաղը իրիկուն:

# ԵՐԿՐՈՐԴ ՁԱՅՆԱԲԻԹԵՂ

*Ստեղծագործութիւն բոյսերու, կենդանիներու եւ մարդուն, իւրաքանչիւրը ըստ իր տեսակին.— Ինչպէս Աստուած ստեղծեց Ադամը եւ Եւան.— Վերարտադրող ուժը Աստուծմէ տրուած.— Աստուած օրէնք մը չպիտի շինէր որ ապականութիւն ունենար իր մէջ. —Երբ ամօթ չենք զգար այն կերպին համար, որով Աստուած ստեղծեց Ադամը եւ Եւան, պէտք չէ նաեւ ամօթ զգանք այն կերպին համար, որով շինուեցան Կայէնն ու Աբէլ.— Աստուծոյ մաքուր մտածումները ունենալ, իր օրինակին համեմատ.—Վերարտադրութիւնը կը նմանի ստեղծագործող ուժին:*

**Սիրելի բարեկամս Հրանտ,**

Այս իրիկուն կ'ուզեմ խօսիլ քեզի, թէ ինչպէս սկիզբը, Աստուած, Ադամը և Եւան ստեղծեց և հրամայեց որ բոյսերուն, կենդանիներուն և մարդոց կեանքը տեւական ըլլայ։ Արդ, եթէ նորէն դառնանք այդ հրաշալի պատմութեան, պիտի տեսնենք թէ երրորդ օրը Աստուած ստեղծեց կանանչը, խոտը, «սերմ տուող խոտը և իր տեսակին պէս պտուղ տուող պտղաբեր ծառը, որ իր մէջ իր սերմը ունենայ երկրի վրայ»։ Հինգերորդ օրը ստեղծեց ձուկերը և թռչունները, և Աստուած տեսաւ թէ բարի են, ըսաւ. «Աճեցէք և բազմացէք»։ Եւ վեցերորդ օրը ստեղծեց «անասուններ, սողուններ ու երկրի գազաններ իրենց տեսակին պէս» ու ամէնէն վերջը, արարչութեան գործին մէջ, Աստուած ստեղծեց նաև մարդը, ըսելով. «Մեր պատկերին ու մեր նմանութեան պէս մարդը ստեղծենք, որպէս զի ծովու ձուկերուն, երկնքի թռչուններուն, անասուններուն ու բոլոր երկրին, և այս վերջնոյն վրայ սողացող բոլոր սողուններուն իշխէ։» Եւ Աստուած գետնի հողէն շինեց մարդը, անոր քիթին ծակերուն կենդանութեան

շունչ փչեց ու մարդը կենդանի հոգի եղաւ։ Աստուած արեւելքին կողմը, Եդեմին մէջ պարտէզ տնկեց և իր շինած մարդը հոն դրաւ, ու ըսաւ. «Աղէկ չէ՛ որ Ադամը մինակ ըլլայ, անոր օգնական մը տանք իրեն յարմար»։ Եւ Աստուած խորունկ քուն մը բերաւ Ադամին վրայ, որ քնացաւ իսկոյն։ Աստուած այն ատեն անոր կողին ոսկորներէն մէկը առաւ ու անոր տեղը միս լեցուց։ Ադամէն առած ոսկորը կին շինեց ու զանիկա Ադամին բերաւ և Ադամ ըսաւ. «Հիմա ասիկա ոսկորէս ոսկոր ու մարմինէս մարմին է, ասիկա կին թող կոչուի, որովհետեւ այրէն առնուեցաւ»։ Անոր համար այրը պիտի ձգէ իր հայրն ու մայրը և իր կնկանը պիտի յարի ու մէկ մարմին պիտի ըլլան։ Աստուած իր պատկերովը ստեղծեց մարդը, արու և էգ ըրաւ զանոնք և օրհնեց ու ըսաւ անոնց. «Աճեցէք և շատցէք և երկիրը լեցուցէք և անոր տիրեցէք ու ծովու ձուկերուն ու երկինքի թռչուններուն և երկրի վրայ սողացող ամէն կենդանիներուն իշխեցէք»։

Վստահ եմ, սիրելի տղաս, որ դուն համամիտ պիտի գտնուիս ինծի, ըսելու համար թէ ասիկա շատ գեղեցիկ բացատրութիւն մըն է, որուն մէջ կը տեսնենք Աստուծոյ միտքին և մեթոտին յայտնութիւնը, որով ուրիշներ կը ստեղծէ բռնելու համար բոլոր բոյսերուն, ծառերուն, ձուկերուն, թռչուններուն, կենդանիներուն և մարդոց տեղը, զորս Աստուած այս աշխարհի վրայ ստեղծեց և որոնք սակայն ամէնքն ալ քիչ տարիներ ետքը պիտի մեռնին և անհետ ըլլան։ Այս օրէնքը կամ մեթոտը որով ծնող բոյսերը և կենդանիները կեանք կուտան իրենց նմանող պզտիկ բոյսերու և կենդանիներու, նպատակ ունի անոնց պակասը լեցնել, այնպէս որ աշխարհի վրայ կեանքը կը շարունակուի ծնողներուն մեռնիլ երթալէն վերջն ալ։ Այս կէտին մէջ յստակօրէն Աստուած կը սոր-

վերցնէ մեզի, որ ինքը հաստատած ու հրամայած է որ մենք ծնով ըլլանք և դիտենք թէ Աստուած օրէնք մը չպիտի՞ հաստատէր որ իր մէջ անմաքուր բան մը ունենար։

Անմաքուր բան մը չենք նկատեր ուրեմն, ուսումնասիրել այն հրաշալի իմաստութիւնը և զօրութիւնը զոր Աստուած գործադրեց Ադամը և Եւան ստեղծելով, նոյնպէս՝ երբ պէտք եղած կերպով խորհինք այն ո՛չ նուազ հրաշալի և խորհրդաւոր կերպին վրայ, որով Աստուած ստեղծեց Կայէնն ու Աբէլը, անոնց տղաքը, և որով Ան ամէն օր, ամէն տարի տակաւին կը յարուցանէ նոր սերունդներ, որպէս զի իրենց ծնողքներուն տեղը բռնեն, երբ ասոնք մեռնին անցնին։ Եթէ միտքերնիս բերենք որ երբեք անմաքուր խորհուրդ մը չանցաւ մեր երկնային սիրելի Հօր մտքէն, երբ Ան այս բաներուն վրայ կը խորհէր և երբ զբաղած էր արարչագործութեամբ, այն ատեն դիւրաւ պիտի հասկնանք, թէ այս մասին ամէն սխալ մտածում և գործ, որ մեր մտքերուն համար որ և է ուրիշ նուիրական բանի մը պէս մաքուր ու նուիրական պէտք էր ըլլար, կու գայ ոչ թէ Աստուծմէ այլ սատանայէն։ Եթէ մենք ճշմարտապէս ըմբռնենք ասիկա, այն ատեն ուղիղ ճամբու մէջ եղած պիտի ըլլանք և այս խնդրոյն վրայ պիտի խորհինք այնպէս, ինչպէս Աստուած խորհեցաւ անոնց մասին՝ արարչագործութեան ատեն, արարչագործութենէ առաջ և արարչագործութենէն ի վեր։ Եթէ մենք մեր մտածումները Աստուծմէ առնենք, անոնք պիտի ըլլան մաքուր, իսկ երբ սատանայէն առնենք, անոնք պիտի ըլլան անմաքուր։ Ինքնին մաքուր է նիւթը և մենք պէտք է որ անոր մասին խորհած ատեննիս յարգանքով և մտամփոփումով վարուինք։

Հարկաւ այս նկարագրութենէն տեսար թէ Աստուած բոյսերուն, ծառերուն և այս կարգի գոյացութիւններուն և ուրիշ ապրող արարածներուն տուաւ ուրիշներ արտա-

դրելու ուժը, իւրաքանչիւրին՝ իր տեսակին պէս։ Եթէ անոնք սահմանուած ու որոշուած չըլլային, այն ատեն դեղձերը պիտի աճէին խնձորի ծառերուն վրայ և ծիրաններն ալ վայրի կաղիններուն վրայ։ Նմանապէս Աստուծոյ ստեղծած բոլոր բաները արտօնուած չեն ստեղծագործիչ զօրութիւնը այնպէս մը ի գործ դնելու, ինչպէս Աստուած ըրաւ, քանի որ այդ պարագային ծառերը պիտի կրնային թռչուններ և ձուկեր ստեղծել և թռչունները ծառեր ու կենդանիներ, իրենց հաճոյքին համեմատ, բայց իւրաքանչիւրին զօրութիւն մը տրուած է արտադրելու և շարունակելու ի՛ր տեսակը, իր մէջ ունենալով «իր տեսակին սերմը»։ Ասոր համար է որ խնձորի հունտերը երբ պէտք եղած տեղը տնկուին, միշտ խնձորի ծառեր կ'արտադրեն և դեղձի հունտերը կ'արտադրեն միայն դեղձի ծառեր, և այս այսպէս է կեանքի ու արարածներու ամէն ձեւերուն համար։ Ուրեմն Աստուած բոյսերը և կենդանիները ու բոլոր ապրող արարածները, ոչ թէ ստեղծագործիչ զօրութեամբ մը օժտեց այլ ուրիշ զօրութեամբ մը, որ աստիճան մը, ինչպէս ըսինք, շատ կը նմանի անոր, և որովհետեւ իւրաքանչիւրը իր տեսակին յարմար հունտ կ'արտադրէ և այս հունտերէն է որ կ'աճին կամ կը յառաջանան պզտիկ տունկերը, որոնք կը նմանին ծնող բոյսերուն, այս զօրութիւնը կ'անուանենք ոչ թէ ստեղծագործիչ զօրութիւն, այլ վերարտադրող զօրութիւն։

Այն եղանակը, որով այս զօրութիւնը բոյսերուն մէջ կը տեսնուի, պիտի փորձեմ պատմել քեզ յառաջիկայ ձայնաթիթեղով։

# ԵՐՐՈՐԴ ՁԱՅՆԱԹԻԹԵՂ



*Հայր, մայր եւ ցուենիին ժառը. — Աստուած արու եւ էգ ստեղծեց զանոնք. — Հայր եւ մայր բնութիւնները միեւնոյն բոյնին մէջ. — Ցօղունը իր մեսաֆսովը իգական եւ ցցունքը սերմնափոշիով արական. — Հայր եւ մայր բնութիւնները երբեմն բաժնուած. — Սերմնափոշին կը փոխադրուի հովին եւ միջատներուն միջոցաւ. — Եթէ Աստուած ոչնչացնէր բոյսերուն եւ ծառերուն վերարտադրումը, ամբողջ բուսական կեանքը պիտի անհետանար եւ կենդանիներն ու մարդիկ անօթութենէ պիտի մեռնէին:*

**Սիրելի բարեկամս Հրանտ,**

*Երէկ իրիկուն կրամոֆոնով քեզի ըրած կարճ խօսակցութեանս մէջ խօսեցայ այն պզտիկ բոյսին վրայ, որ հողին մէջ տնկուած հունտէն յառաջ կուգայ և զայն կոչեցի «պզտիկ տունկ». բոյս մը ճիշդ այնպէս զաւակն է ծնողաց, ինչպէս բոյնին մէջի պզտիկ թռչունները զաւակն են իրենց ծնող թռչուններուն, որոնք կը շինեն բոյնը, թխսելով կը հանեն պզտիկ թռչունները ու յետոյ կը հսկեն անոնց վրայ ու զանոնք այնքան գորովով կը սնուցանեն: Թռչուններուն մէջ դուն պէտք է տեսած ըլլաս թէ անոնք երկու ծնողներ ունին, հայր թռչունը և մայր թռչունը, սակայն Ծննդոց Գիրքի արարչագործութեան նկարագրութեան մէջ հաւանական է որ դուն չի նշմարեցիր կատարեալ իմաստը այն մասին, ուր կը խօսուի զանազան ապրող արարածներու վրայ, զորս Աստուած ստեղծեց և ուր ըսուած է. «Արու և էգ ստեղծեց զանոնք»: Այս իրողութիւնը անտարակոյս նշմարած ես դուն կենդանիներու վրայ և հաւանաբար թռչուններուն վրայ ալ, սակայն չես նշմարած որ Աստուած որոշեց թէ իւրաքանչիւր պզտիկ բոյս պէտք է ունենայ թէ՛ հայր և թէ մայր և թէ բոյսերուն համար ալ ճշմարիտ է եթէ*

ըսուի թէ «Արու և էգ ստեղծեց զանոնք»։ Ամէն պարագայի մէջ այս է բուն իրողութիւնը։

Կարգ մը բոյսերու մէջ հայր և մայր բնութիւնները միեւնոյն ծնող բունին մէջ միասին կ'ապրին բայց հօր և մօր յատուկ բնութիւններով կը տեսնուին միայն այն ատեն, երբ կատարեալ զարգացման և չափահասութեան ժամանակը եկած է բոյսին կեանքին մէջ և հունտը պէտք է արտադրուի, որպէս զի երբ յառաջիկային ծնող բոյսը թառամի և մեռնի, ուրիշ երիտասարդ բոյսեր կարենան ծաղկիլ հունտէն և թէև ծնող բոյսը մեռած ու անցած ըլլայ, սակայն հունտին միջոցաւ այդ դիակը պահպանուի և շարունակուի աշխարհի վրայ։

Այն եղանակը որով այս հայր և մայր բնութիւնները միացած են և ինքզինքնին անջատօրէն երեւան կը բերեն հունտը կազմելու գործին մէջ, ուրկէ յետոյ պզտիկ բոյսը յառաջանայ, թերեւս ամէնէն աւելի դիւրութեամբ կը տեսնուի դաշտի մը մէջ ուր ցորենը կ'աճի։ Բունին՝ մինչեւ իր կատարեալ բարձրութեան հասնելէն վերջ, ուր հասկերն ա՛լ սկսած են կազմուիլ և դէպի դուրս կը հանեն նուրբ մետաքսը, զոր դուն անտարակոյս հասկերու վերի ծայրերը նշմարած ես, նոյն միջոցին կ'երեւան բունին վերին մասին վրայ նաև բազմաթիւ բողբոջներ։ Արդ, այս հասկերը իրենց այն մասովը, ուսկից մետաքսը կը կախուի, մայրն են, կամ թէ բոյսին իգական արտայայտութիւնը, և բողբոջները՝ ծածկուած ծաղկափոշիով, հայրն են կամ բոյսին արական արտայայտութիւնը։ Երբ մեղմ զեփիւռը կ'երերցնէ ցորենի բունը, ծաղկեփոշին բողբոջներէն մետաքսին վրայ կ'իյնայ և մասնաւոր մետաքսէ թելերու միջոցաւ կ'առաջնորդուի դէպի առանձին հատիկները ու այս կերպով ամբողջ բունին վրայ աճող իւրաքանչիւր ցորենի հատիկ իր մէջ կ'ընդունի կեանքի այն սկզբունքը, առանց որուն անիկա չէր կրնար ցորենի հատիկ մը ըլլալ։

Ամէն բոյսերու մէջ հայր և մայր բնութիւնները կ'արտայայտուին ծաղիկով ու կը տեսնուին ծառերու վրայ, բողբոջներու մէջ և վարդերու վրայ մացառներու մէջ։ Մէկ քանի պարագաներու, երկու բնութիւնները, ինչպէս ցորենի օրինակին մէջ տեսնուեցաւ, միացած են նոյն ծառին կամ թուփին մէջ, մինչդեռ ուրիշ պարագաներու հայր և մայր բնութիւնները կ'ապրին իրարմէ անջատ թուփերու մէջ։ Երբ այս երկուքը գտնուին նոյն ծաղկին մէջ, ծաղկի փոշին արու փոշամանէն դիւրաւ կ'երթայ դէպի էգ խարանը և անկից կ'անցնի դէպի վար յօղունը, որ ծածկուած է ծաղիկին գեղեցիկ տերեւներուն տակ, ուր հունտերը ծաղկի փոշիի միջոցաւ կեանքի սկզբունքը ի գործ դնելու վիճակին մէջ մտած՝ կ'աճին ու կը հասուննան։ Կարգ մը պարագաներու ալ, արու և էգ բնութիւնները իրարմէ անջատ ծաղիկներու վրայ կը գտնուին, երբեմն միեւնոյն ճիւղին վրայ և երբեմն միեւնոյն բոյսին տարբեր ճիւղերուն վրայ։ Կան պարագաներ ալ, ուր արու և էգ բնութիւնները միայն իրարմէ անջատ ծառերու վրայ կ'աճին և այս հայր ու մայր ծառերը իրենց բողբոջներով կրնան աճիլ ոչ թէ իրարու մօտ այլ իրարմէ շատ հեռու, երբեմն քար մը նետելու հեռաւորութեամբ իրարմէ հեռու և երբեմն ալ իրարու մէջ ընդարձակ դաշտ մը տարածուելու չափ և երբեմն իրարմէ մղոններով հեռու գտնուելով։ Երբ արու և էգ բնութիւնները իրարմէ բաւական հեռացած են, ծաղկափոշին կամ այդ բողբոջը կը տարուի դէպի էգին բողբոջները կամ մայր բոյսը, միջնորդութեամբը հովին, մեղուներուն և ուրիշ ճճիներու, որոնք բնաւ գիտակցութիւնը չունին թէ բողբոջներուն այսպիսի ծառայութիւն մը կը մատուցանեն, այլ լոկ կը փափաքին եւ նպատակ ունին մեղր հաւաքել յառաջիկայ ձմեռուան համար իբր իրենց սնունդ։

Իմ քեզի ըսածս գաղափար մը պիտի կազմես այն խնամատարութեանը մասին զոր Աստուած ցոյց տուաւ երբ սկիզբը ստեղծեց բոյսերը եւ ծառերը, «իւրաքանչիւրին իր տեսակին համեմատ հունտ տալով», Նաեւ պիտի տեսնես թէ ի՛նչպէս Աստուած այսօր կը վերարտադրէ, կը շարունակէ եւ կը սփռէ կեանքը ամէն խոտի, ամէն կանանչ ցօղունի, ամէն ծաղիկի և ամէն ծառի վրայ, որպէսզի այս վերջինները գրաւեն տեղը այն խոտերուն, բոյսերուն եւ ծառերուն որոնք քիչ առաջ պիտի թօռմին, մեռնին ու անհետ ըլլան։ Եթէ Աստուած բոլոր խոտերէն եւ ծառերէն առնէր այս հրաշալի վերարտադրիչ ուժը, որով Նա զանոնք օժտած է, հազիւ թէ մէկ քանի տարիներ պիտի անցնէին և ամէն բան որ կանանչ է պիտի մեռնէր ու անցնէր աշխարհիս վրայէն, եւ այն ատեն գոյութիւն չպիտի ունենային ոչ ծաղիկները եւ ոչ պտուղները, ոչ ցորենի հատիկը եւ ոչ ալ որ եւ է տեսակի սնունդ մը, եւ սովը ու մահը պիտի սրբէին տանէին ամէն թռչուն ու ձկի եւ նոյն իսկ մարդն ալ այս աշխարհիս մակերեսէն։

Ուրեմն, Հրանտ, կը տեսնես թէ այս խնդիրներուն նկատմամբ նոյն մաքուր եղանակով խորհելով, զոր Աստուած մեզ ցոյց տուած է, քայլ առ քայլ կը հանինք այն կատարեալ ու գոհացուցիչ պատասխանին քու հարցմանդ, զոր դուն ուղղեցիր սիրելի մօրդ, երբ անցեալ իրիկուն տուն եկար ու գտար նորածին քոյրդ որ օրօրոցին մէջ պառկած էր։

Վաղ իրիկուն պիտի ըսեմ քեզի թէ ինչպէս Աստուած սահմանեց որ ամէն նորածին ձուկ և թռչուն և կենդանի պէտք է որ ունենան հայր մը և մայր մը։

# ՉՈՐՐՈՐԴ ՁԱՅՆԱԹԻԹԵՂ



*Բուսական կեանքը կը շարունակուի վերարտադրութեամբ.—Գործա-րանաւոր կեանքը կը բաժնուի զգացող եւ ոչ զգացող կեն-դանիներու.—Զգացող կենդանիները կ'արտադրեն ձուեր, փոխանակ սեր-մի. — Հայր եւ մայր բնութիւնները կը միանան ոստրէի մը մէջ.—Պզտիկ ոստրէի՝ կեանքին առաջին մասը. — Հայր եւ մայր բնութիւնները ձուկերու մէջ բաժնուած.—Էգ ձու-կը ձուերը կը բազմացնէ՝ եւ արուն կ'արգասաւորէ զանոնք, այդ ձուերուն վրայ լողացած սերմն հեղուկ մը ցուրս տալով.—Ձուկերը կը զարգանան ջուրին եւ արեւուն ջերմութեան ազդեցութեամբ. — Ոստրէներու եւ ձուկերու ձագերը որբեր են:*

**Սիրելի բարեկամս Հրանտ,**

Նախորդ ձայնաթիթեղներով փորձեցի ըսել քեզի, ինչպէս կը յիշես, թէ ի՛նչպէս Աստուած արեւը, լուսինը, աստղերը, ապառաժները, լեռները, ծովերը եւ բոլոր նմանօրինակ առարկաները, զորս գիտունները անգործարանաւոր մարմիններ կը կոչեն, ստեղծած ատենը անոնց իրենց նման ուրիշներ արտադրելու ուժը չէր տուած, այլ իրեն վերապահեց ուրիշներ յառաջ բերելու կամ եղածները ոչնչացնելու զօրութիւնը: Բայց նաեւ քեզի թէ խոտերուն, ծառերուն և բոլոր կեանք ունեցող առարկաներուն մէջ, զորս գիտունները գործարանաւոր կը կոչեն, Աստուած դրաւ զօրութիւն մը իրենց նման ուրիշներ արտադրելու, միայն թէ այս նոր արտադրուածները պէտք էր որ կեանքը հայրէն սկսէին, իբր պզտիկներ: Բոլոր բոյսերուն, բանջարեղէններուն և հունտերուն համար այս այսպէս ըլլալով, սկսինք բոյսերէն, որոնց է իւրաքանչիւր տեսակը, զոր Աստուած ստեղծեց, նախ կ'ունենայ բողբոջը կամ ծաղիկը, յետոյ պտուղը կամ սերմը և այս սերմերը իրենց կարգին ու-

քիչ նմանօրինակ պզտիկ բոյսեր կը ստեղծեն, որոնք երբ մեծնան, իրենց կարգին ծաղիկ կուտան ու սերմեր կ'արտադրեն ու այսպէս շարունակաբար։ Նոյն իրողութիւնն է որ միշտ կը կրկնուի ամէն տեղ. իւրաքանչիւր բոյս և ծառ կը պատրաստէ այն սերմը, որով իր կեանքը պիտի կրնար շարունակուիլ իրմէ վերջը եկող բոյսին կամ ծառին միջոցաւ ու անիկա տեւականօրէն մինչև ժամանակին վերջը։

Յիշելով այս իրողութիւնները, այս իրիկուն ներկայ ձայնաթիթեղով քայլ մը եւս յառաջ պիտի երթանք։ Գործարանաւոր կեանքի ձեւերը, պարզութեան ու դիւրութեան համար, կը բաժնուին երկու դասակարգերու, որոնց մէկուն պատկանողները ջիղեր ունին, ինչպէս նաև հինգ զգայարանքներ, տեսողութեան, լսողութեան, հոտոտելեաց, շօշափման և ճաշակելեաց։ Միւս դասակարգին կը վերաբերին այնպիսի մարմիններ, ինչպէս բոյսերը և ծառերը, որոնց վրայ արդէն խօսեցանք և որոնք ջիղ չունին և հինգ զգայարանքներէն զուրկ են բոլորովին և կը կոչուին ոչ-զգացող էակներ, մինչ առաջինները զգացող էակներ են։

Երբ թռչունները, ձուկերը և բոլոր կենդանիի տեսակները նկատողութեան առնենք, կը տեսնենք որ սերմերու արտադրութեան համար փոխանակ հայր և մայր բնութիւնները միացած ըլլալու, ինչպէս բոյսերու մէջ տեղի կ'ունենայ, անոնք կը միանան միայն երբ ձուն արտադրել պէտք է։ Ձուերէ ոմանք, ինչպէս թռչուններունը, ծածկուած է կեղեւով, բայց ամէն ձու այսպէս չէ, հայր բնութիւնը փոխանակ ծաղկափոշի արտադրելու, ինչպէս բոյսերու մէջ տեղի կ'ունենայ, ջիղ ունեցող արարածներու մէջ յառաջ կը բերէ ջուրով հեղուկ մը, որ ծաղկափոշիին տեղը կը բռնէ և կը մտնէ ձուին այն մասին մէջ, զոր մայրը, ծնողը զանազան եղանակներով յառաջ կը բերէ ինչպէս որ հիմայ պիտի տեսնենք։

*Նախ քննենք ոստրէն, որ ոչ կրնայ լսել, ոչ կրնայ տեսնել, ոչ կրնայ հոտոտել և ոչ ալ հաւանաբար կրնայ ճաշակել. և որովհետև անիկա միայն շօշափելեաց զգայարանքը ունի, կ'ապրի բոլոր զգացող էակներու զարգացման սանդուխին իբր ամէնէն վարի աստիճանին վրայ գտնուողը և պիտի տեսնենք թէ բոյսերէ մեծագոյն մասին պէս հայր և մայր բնութիւնները միասին կ'ապրին միակ ոստրէի մը մէջ, և մինչդեռ ծնող ոստրէին մէջ ձուն պատրաստուելու վրայ է՝ հայր և մայր բնութիւնները կը բերեն իրենց բաժինը, պտղաբերելու համար այն բանը որ կը կոչուի արգասաւոր ձու, կամ թէ այնպիսի ձու մը, որ յառաջ պիտի բերէ ոստրէի ձագ մը: Երբ այս ձուերը կատարելապէս կազմուած են, բան մը որ գարնան եղանակին տեղի կ'ունենայ, այն ատեն դուրս կ'ելնեն ծնող ոստրէին մարմինէն և ջուրին մէջ ասդին անդին կը լողան, մինչև որ ապառաժի, մեծ ոստրէի մը կեղևին կամ ուրիշ կարծր մարմնոյ մը վրայ հաստատուին ու այն ատեն կեղևը, որ ոստրէին թէ՛ բնակարանն է և թէ զգեստը, անմիջապէս կը կազմուի անոր պզտիկ մարմնոյն շուրջը:*

*Գալով ձուկերուն, անոնք կը տարբերին: Երբ Աստուած ձուկերը ստեղծեց, մայր բնութեան առանձին մարմին մը տուաւ և հայր բնութեան ալ առանձին մարմին մը, այնպէս որ ձուկին ձագը պզտիկ մանչու մը կամ աղջկան մը պէս երկու ծնողներ ունի՝ մէկը մայր ձուկը և միւսը հայր ձուկը:*

*Գարնան ժամանակ երբ մայրդ խոհանոցին մէջ ձուկ մը կը սակէ կը տեսնես որ անոր փորը հազարաւոր ձուերով լեցուած են, այս ձուերը յաճախ ձուկին հետ կ'եփուին: Արդ, տարուոյն մեծ մասը այդպիսի ձուկերը կ'ապրին խորունկ ջուրերու մէջ, և գարնան երբ իրենց մարմինները լեցուն են այն ձուերով որոնք տարուոյն*

ընթացքին կազմուեցան, այն ատեն կը թողուն իրենց կանոնաւոր բնակարանը և կը լողան կ'երթան դէպի ծովեզերքներու ներս քաշուած մասերը և երբեմն ալ հարիւրաւոր փարախներով գետերէ վեր, մինչև որ գտնեն հանդարտ, ապահով և յարմար տեղ մը, ուր մայր ձուկերը կարենան իրենց հաւկիթները ածել: Ահաւասիկ այս միջոցին՝ գարնան եղանակին է որ կ'ունենանք շատ մը ձուկեր որոնք կը բռնուին ձկնորսներու կողմէ մեծ ուռկաններու միջոցաւ: Ձուկերու այս տեղափոխութեան ատեն, մայր ձուկերուն կ'ընկերանան նաև հայր ձուկերը և երբ իրենց փնտռած յարմար տեղը գտնեն, մայր ձուկերը իրենց մարմնէն դուրս կուտան հազարաւոր ձուեր, որոնց հետ միևնոյն ժամանակ կայ նաև կէս հաստատուն նիւթ մը, որուն մէջ ձուերը կը ծփան և որ հում հաւկիթի սպիտակուցին շատ կը նմանի: Երբ մայր ձուկը իր ձուերը կ'ածէ կը լմնցնէ, հայր ձուկը կը լողայ այդ ձուերուն վրայ և միևնոյն ժամանակ իր մարմնէն դուրս կուտայ կէս հեղուկ նիւթ մը որ հում հաւկիթի սպիտակուցին կը նմանի: Այս կերպով է որ ձուերը կ'արգասաւորուին ճիշդ ցորենի հատիկներուն պէս՝ ունենալով ծաղկափոշին, որ հասկերու վրայ գտնուած մետաքսներուն վրայ կ'իյնայ և որ մետաքսէ թելերուն միջոցաւ կը տարուի վար դէպի ցորենի հատիկներուն առանձին տեղերը:

Ձուերուն՝ ջուրին մէջ որոշ տեղ մը հաստատուելէն վերջ, ծնողքը կը հեռանայ և այլ ևս երբեք չի տեսնար կամ գոնէ երբեք չի ճանչնար իրեն ձագը եղող ձուկերը, որոնք քիչ օրէն ջուրին շարժումէն և արեւին տաքութենէն մէջտեղ կ'ելլեն: Ուրեմն թէ՛ ձուկն և թէ ոստրէի ձագերը պզտիկ որդեր են, ամէնէն առաջին վայրկեանէն սկսելով:

Դիտցար հիմա թէ ձուկի ձագերը ո՛ւրկէ կուգան, վաղ իրիկուն ալ պիտի խօսիմ քեզի թռչուններուն և կենդանեաց ձագերուն վրայ:

# ՀԻՆԳԵՐՈՐԴ ՁԱՅՆԱԹԻԹԵՂ

*Ինչպէս սերմերը ընդունակութիւնը ունին աճելու. — Ի՛նչպէս կը թխուին ձուերը. — Թխող հայր եւ մայր թռչուններուն սովորութիւնները. — Այն գեղեցիկ դասը, զոր անոնք կուտան. — Վտանգներ՝ որոնց ենթարկուած են պզտիկ թռչունները. — Իրենց վերադարձը՝ արեւոտ կլիմաներու մէջ, շինելու համար իրենց սեպհական բոյները. — Արարչագործութեան մէջ անոնց յաջորդող անասունները. — Պատճառներ, որոնցմով անասունները ձու չեն ածեր. — Ձուն կը պահուի մայր անասունին մարմնոյն մէջ. — Իր մարմինը հրաշալիօրէն կազմուած, ըստ բաւականի աճելէ վերջ պզտիկ անասունիկը կը ծնի. — Ծնելէն վերջն ալ մօրը մարմնէն կը ստանայ սնունդը. — Կաթէն կը կտրեն երբ ակռաները կը մեծնան. — Ամենէն ստորին կարգի անասունները մարմնապէս ամենէն շուտ արբունքի կը հասնին. — Կենդանական սանդուխին ամենէն բարձր աստիճանին վրայ կը գտնուի մարդը. — Ամենէն աւելի երկար ատենի պէտք ունի մարդը՝ արբունքի հասնելու համար. — Մանկութեան տարիներու արժէքը:*

**Սիրելի բարեկամս Հրանտ,**

Խոստացայ այս իրիկուն խօսիլ քեզի նոր ծնած թռչուններու և նոր ծնած կենդանիներու մասին։ Գարնան մօրդ հետ պարտէզ գացած ես հարկաւ, և տեսած ըլլալու ես թէ ան՝ ծաղիկներու և բանջարեղէններու հունտեր կը ցանէ։ Տեսած ես թէ՝ ի՛նչպէս անիկա հունտերը կը դնէ հողին մէջ և զանոնք խնամով կը ծածկէ, այնպէս որ հողին խոնաւութիւնը և արեւուն տաքութիւնը կարող կ'ըլլան արթնցնել այն կեանքը որ հունտերուն մէջ կը քնանար և որոնց մէջ պզտիկ բոյսերը արդէն պատրաստ էին արթննալու և աճելու, նախ իբր նորաբողբոջ ու յետոյ իբր մեծցած բոյսեր։

Երբ տեսար պզտիկ ձուերը այն բոյնին մէջ, զոր Թռչունները պատուհանիդ մօտ գտնուած ծառին մէջ շինեցին, քեզի այնպէս Թուեցաւ անշուշտ Թէ՝ ատոնք այն հունտերն էին որոնցմէ յառաջ պիտի գային նոր Թռչուններ։ Իրաւ է Թէ ձուերը հունտեր են, բայց բոյսերու հունտերուն պէս հողի մէջ չեն դրուիր։ Ծնող Թռչունները բոյն մը կը շինեն, ուր կրնան ձուերուն վրայ նստիլ, անոնց փոխանցել իրենց մարմնոյն ջերմութիւնը, ու այսպէս փութացնել կամ աճեցնել այն կեանքը որ կը գտնուի ձուերուն մէջ. այս կերպով պզտիկ Թռչուններուն մարմինները ձև կ'առնեն ու կը մեծնան։ Երկու կամ երեք շաբաթ վերջը երբ Թռչունները մեծցած են բաւական, ձուերուն կեղևը կը կոտրի, կը բացուի, և այն ատեն պզտիկ Թռչնիկները ծնած կրնան սեպուիլ։

Եթէ դուն ուշադրութեամբ դիտեցիր երկու ծնող Թռչունները այն շաբաթներու ընթացքին երբ պզտիկ Թռչնիկները Թխսուելու վրայ էին, անշուշտ նշմարեցիր որ մայր Թռչունը նախամեծար կը համարէր ժամանակին մեծ մասը ինք նստիլ ձուերուն վրայ և զանոնք տաք պահել և հայր Թռչունն ալ շատ մօտէն կ'օժանդակէր անոր՝ յաճախ գալով ու նստելով բոյնին մօտ գտնուած ճիւղերուն վրայ, ճռուողելով ու երգելով և մայր Թռչունին զուարճութիւն պատճառելով ու յետոյ կը Թռէր կ'երԹար և քիչ ժամանակէ վերջ կը դառնար իր կտուցին մէջ բռնած բերելով որդ մը կամ որ և է կեր մը, զոր գտած էր, և դէպի բոյնը Թռչելով զայն սիրով կուտար մայր Թռչունին։ Երբեմն երբեմն երբ մայր Թռչունը յոգնէր, երկուքն ալ կը Թռչէին կ'երԹային միասին և մէկ քանի վայրկեան ետքը հայր Թռչունը աճապարելով կը դառնար մայր Թռչունին տեղը բռնելու, ձուերը տաք պահելու և զանոնք որ և է վնասէ զերծ պահելու հա-

մար, մինչդեռ մայր Թռչունը կարող կ'ըլլար այնքան հանգչիլ և զբօսնուլ, որքան պէտք ունէր կամ կը փափաքէր։

Այսպիսի երկու ծնող Թռչուններու ընտանեկան կեանքը շատ իրերանուէր և քաղցր է, և ոչ մէկ մարդ կամ տղայ կրնայ լաւ մը դիտել զանոնք, առանց Թռչուններէն չսորվելու սիրոյ ու հաւատարմութեան դասեր։

Երբ պզտիկ Թռչունները սկսին մեծնալ, ծնող Թռչունները կը միանան կեր որսալու համար։ Պզտիկ Թռչնիկներուն որոշ մեծութեան մը հասնելէն և անոնց փետուրներուն երկննալէն վերջը, ծնող Թռչունները միակ հոգ մը ունին, որ է՝ հսկել, որպէս զի յաւակնոտ պզտիկ Թռչունները խիստ կանուխէն չի փորձեն Թռչիլ և գետին չիյնան, կանուխ ձեռք չի հանեն կամ թէ դըժբախտ պատահումի մը հետեւանօք չի մեռնին։ Եթէ պզտիկ Թռչունները համբերող ըլլան, ժամանակը հասնելուն, ապահովութեամբ պիտի կրնան ծառէ ծառ Թռչիլ և ամառը իրենց մանկութեան բնակարանին շուրջերը անցընելէ յետոյ, պիտի Թռչին ու հեռանան դէպի ուրիշ տեղեր, ձմեռը տաք կլիմայի մէջ պիտի անցընեն և եթէ անգութ և անսիրտ մարդու մը կամ տղու մը կողմէ գնդակահար չըլլան, յաջորդ գարնան պիտի վերադառնան կատարելապէս աճած և արբունքի հասած, և իրենց ընկերներով իրենց տեղը պիտի ունենան վերարտադրող աշխարհի մէջ և կեանքի այս յաջողութեան մէջ անոնք ալ պիտի շինեն բոյներ, իրենց և իրենց ընկերներուն համար, մեր բնակարաններու մօտակայ ծառերուն մէջ, և անոնք պզտիկ Թռչնիկներու Թուխս մը պիտի հանեն։

Արարչագործութեան կարգին մէջ, անոնցմէ վերջ կուգան կենդանիները։ Կենդանիները Թռչուններու պէս ձու չեն ածեր և ասիկա բանաւոր պատճառներով։ Կը

յիշե՞ս թէ ձուկերը ինչպէս կ'ընէին։ Ծառեր մէկ եղանակի մէջ հազարաւոր ձուեր կ'արտադրեն, ձուկեր կան որոնք ճանչցուած են իբր մէկ անգամէն տասնըվեցէն մինչև քանի միլիոն ձու ածող։ Այս ձուերէն շատերը ածուելէ յետոյ աննպաստ պայմաններու հետևանքով երբեք չեն թխսուիր և թխսուողներէն ալ մեծ մասը կեր կ'ըլլան աւելի մեծ ձուկերու, որովհետև ձուկերը մսակեր են և զիրար կ'ուտեն։ Թռչուններու ձուերն ալ ենթարկուած են զանազան տեսակ վտանգներու, ինչպէս բադերու, սագերու և հաւերու հաւկիթները, որոնք մարդոց սնունդներէն մէկն են։

Ասանկ կորուստի մը առաջքը առնելու և լաւագոյն վերջաւորութեան մը յանգելու համար, երբ կեանքի աւելի բարձր ձևերուն հասնինք, կը տեսնենք թէ փոխանակ բոյնի մը մէջ ձուեր ածելու ու յետոյ անոնց վրայ նստելու, մինչև որ ձուերը ելլեն, կենդանիներ կան որոնք մինչև պէտք եղած կերպով արգասաւորուիլը մօր մարմնոյն մէջ կը մնան։ Մարմնոյն այդ մասին մէջ, զոր Աստուած հրաշալիօրէն ձևակերպած ու այդ նպատակին համար պատրաստած է, կը կատարուին այնպիսի փոփոխութիւններ, որոնց նմանը տեղի կ'ունենայ. երբ խնդիրը թռչուններու վրայ է և երբ մայր թռչունը ձուին վրայ նըստած է։ Ատեն մը վերջը, որ երկու երեք ամիսէն ամբողջ տարի մը կրնայ տևել, ինչպէս որ պզտիկ ձագ հաւը պէտք եղած չափով զարգացման հասնելէ վերջը կը կոտրէ ձուին կեղևը՛ և դուրս կուգայ ապրելու համար իրեն առանձին կեանքը, այնպէս ալ ձուն կամ սերմը, որ մայր կենդանիին մարմնոյն մէջ պահուած էր, զարգանալէ և պէտք եղած չափով աճելէ յետոյ, իրեն առանձին ու անկախ կեանքը ապրելու համար դուրս կուգայ իր մօր մարմնէն կամ `կը ծնի՝ ինչպէս որ սովորութիւն ունինք ըսելու։ Մինչև ծնած վայրկեանը կը սնանի մօրը

մարմինէն, բայց ծնելէն վերջն ալ Աստուած անոր սնունդը կը հայթայթէ մօրը մարմինէն, բայց ոչ թէ մօրը մարմնոյն ներքին մասէն այլ անոր մարմնոյն արտաքին մասէն, ուրկէ նորածինը կը ստանայ զայն կաթի ձեւին ներքեւ։

Այս կերպով պզտիկ կենդանին սովորաբար մէկ քանի շաբաթ կը սնանի, ուրկէ յետոյ ակռաները կը բուսնին և կաթէ կը կտրի՝ ինչպէս կ'ըսեն։ Կաթէն կտրուելէ յետոյ զարգացման նոր աստիճանի մը վրայ կը թեւակոխէ և կենդանիներու դասակարգին մէջ իր գրաւած բարձր կամ ստորին դիրքին համեմատ պէտք կ'ունենայ ամիսներու կամ նոյն իսկ տարիներու, որպէս զի հասնի իր կատարեալ զարգացման ու արբունքին։ Որքան կենդանին ստորին դասակարգի պատկանի, այնքան իր երախայութեան և մանկութեան տեւողութիւնը կարճ կ'ըլլայ, և որքան բարձր աստիճան մը գրաւէ կենդանական աստիճանին վրայ, այնքան այդ ժամանակամիջոցը երկարատեւ կ'ըլլայ ու այնքան աւելի ժամանակի պէտք կ'ունենայ լրացնելու համար իր ֆիզիքական զարգացումը և հասնելու մարմնական կատարեալ արբունքի վիճակին։

Կենդանական աստիճանին մէջ մարդս ամէնէն բարձր տեղը կը գրաւէ. հետեւաբար իր մանկութեան և ֆիզիքական զարգացման ժամանակամիջոցը ամէնէն երկարն է բոլոր արարածներէն զորս Աստուած ստեղծեց. բայց պէտք է միտք բերենք որ Աստուած ստեղծեց մարդս որ ամէն բանի վրայ իշխէ։ Այս պատճառաւ անհրաժեշտ է որ մարդս իր զարգացման համար շատ մը տարիներու պէտք ունենայ, որպէս զի կարող ըլլայ ծանօթութիւն, փորձառութիւն և իմաստութիւն ստանալ և երբ իր կատարեալ արբունքին հասնի, օժտուած ըլլայ ամէնէն լրացեալ ուժերով ինչպէս Աստուած հրա-

մայած է ու այս կերպով արժանի ըլլայ այն բարձր դիրքին, որ սահմանուած է իրեն համար, իբր տիրող՝ ստեղծուած ամէն բանի վրայ, ու արժանի ըլլայ արարածներու դասակարգին մէջ Աստուծմէ վերջը գալու, որուն պատկերովը ու նմանութեամբը ստեղծուած է։

Սիրելի տղաս, շատ մը ուրիշներու պէս դո՛ւն ալ փափաքած ես թերեւս որ կարելի եղածին չափ շուտով կատարեալ մարդ ըլլաս։ Շատ երկար չեն տեւեր սակայն այն տարիները, որոնք կը գտնուին քու այս օրուան տարիքիդ՝ ու այն ժամանակին միջեւ ուր դուն քսանըհինգ տարեկան պիտի ըլլաս եւ քու մարմնական արբունքիդ լրութեանը պիտի հասնիս։ Արբունքի հասնելուդ պէտք է որ կատարելապէս պատրաստուած ըլլաս տանելու համար կեանքի հոգերը եւ ստանձնես մարդու մը յատուկ բոլոր պատասխանատուութիւնները։ Նոյն իսկ հակառակ անոր որ դուն քու տանդ մէջ բացառիկ առիթներ ու առաւելութիւններ կը վայելես, ուրիշ ամէն տղոց պէս պէտք է որ ըլլաս համբերող եւ աշխատող, եւ մինչեւ քսանեհինգ տարիքդ ժամանակը սորվող տեղը չանցնի եւ պէտք եղած օգուտը առնես անկից։

# ՎԵՑԵՐՈՐԴ ՋԱՅՆԱԹԻԹԵՂ

*Երբ Աստուած ստեղծած ըլլար մեզ ամենքս, ինչպէս Ադամն ու Եւան ստեղծեց, այն ատեն մեր ներկայ պայմաններն ու յարաբերութիւնները չէին կրնար գոյութիւն ունենալ.—Չպիտի ըլլային ոչ ընտանեկան յարկերը, ոչ ծնողները եւ ոչ ալ տղաքը.—Մանկութիւնը չպիտի ըլլար իր խաղերովն ու իր հաճոյքներովը.—Բոլոր կերպերը ծանօթ էին Աստուծոյ եւ Ան փնտռեց լաւագոյն կերպը.—Աստուած իր ստեղծագործիչ ուժին նման ուժ տուաւ մարդուն.—Ծնողականութեան մայրութիւնը.—Ինչո՞ւ ծնողները իրենց տղաքը կը սիրեն.—Երկուքը յանձին տղոց մէկին վերածուած են.—Մարդկային ձուն կամ ձուարանը.—Արու կեանքի սերմը.—Ինչպէս կեանքը յառաջ կուգայ.—Խօսակցութիւն մօր եւ տղուն մէջ.—Այս նիւթին ուսումնասիրութիւնը յառաջ կը բերէ հիացում եւ յարգանք.—Ամենէն իմաստուն մարդն ալ չի կրնար ըմբռնել կամ բացատրել մեր կեանքի սկզբնաւորութիւնը կամ աճումը։*

**Սիրելի բարեկամս Հրանդ,**

*Սկսելով բոյսերէն, ամէն իրիկուն խօսեցայ քեզի ձուկերուն, թռչուններուն և կենդանիներուն վրայ և այս իրիկուն պիտի տեսնենք թէ ինչպէս Աստուած հրամայեց որպէս զի մարդուն կեանքը աշխարհիս վրայ շարունակուի։*

*Եթէ Աստուած իւրաքանչիւր անձ զատ զատ ստեղծած ըլլար, ֆիզիքական կատարեալ զարգացման հասած այր մը կամ կին մը, առանց ծնողաց և առանց մանկութեան շրջանին պիտի ըլլար և այն ատեն մեր կեանքի բոլոր պայմանները տարբեր պիտի ըլլային անոնցմէ քան ինչ որ են այսօր։ Գոյութիւն չպիտի ունենային ընտանեկան յարկերը, որովհետև գոյութիւն չպիտի ունենային կեանքի բոլոր այն առնչութիւնները որոնց վրայ հիմնուած է այսօրուան ընտանեկան*

յարկը։ Զպիտի ըլլային յարաբերութիւններ, ինչպէս ամուսնոյ, կնոջ, հօր և մօր, ծնողաց և տղու, եղբօր և քրոջ, հօրաքոյրներու և մօրեղբայրներու և ուրիշ ազգականներու, որով չպիտի ըլլային նաև մեծ հայրերն ու մեծ մայրերը։ Իւրաքանչիւր անձ միւսներէն բոլորովին անկախ պիտի ըլլար և ուրիշ որ և է մէկուն հետ բնաւ առնչութիւն չպիտի ունենար։ Այն սէրերը ու խանդաղատանքները որոնք այսօր կեանքին ամէնէն քաղցր հրապոյրը և ամէնէն ազնիւ ներշնչումը կուտան, բոլորովին պիտի պակսէին։ Փոխանակ չընդմիջուած կեանքի մը յաջորդութեան օղակները ըլլալու, դուն և ես և ամէն անձ, առանձին պիտի դտնուէր և չպիտի կրնար ոչ մէկուն հետ բաժնել իր ուրախութիւնները, ոչ մէկը պիտի ունենայինք որ մեր հոգերուն մէջ օգնէր մեզի, մեր կարօտութեանց հասնէր, հսկէր մեր վրայ ինչպէս մեր ծնողքները և բարեկամները կ'ընեն այսօր, և ոչ մէկը մահուան պահուն մեր կորուստը պիտի ողբար։ Զպիտի ըլլային սիրուն, պզտիկ երախաները՝ փոսիկներով, կունտիկ այտերով, տղայութիւնը չպիտի ըլլար իր խաղերովն ու հաճոյքներովը, դպրոցը չպիտի ըլլար և ոչ ալ մտքի աստիճանական զարգացումը և կեանքի հոգատակին ու աշխատութեան նախապատրաստութիւնը գոյութիւն պիտի ունենար։

Աշխարհիս վրայ ապրելու սահմանուած առաջին մարդիկը ստեղծելու համար նախատեսուած բոլոր ծրագիրները յայտնի էին Աստուծոյ։ Ան սահմանափակուած չէր մէկ կամ մէկ քանի կերպերու մէջ Իր արարչագործութիւնը ի գլուխ հանելու համար, քանի որ ամէն իմաստութիւն և ամէն զօրութիւն կը պատկանի Իրեն։ Բայց Աստուած տեսաւ որ ամէն մարդու Իր ձեռքով ստեղծուիլը լաւագոյն ծրագիրը չպիտի ըլլար։ Արարիչը կ'ուզէր որ մարդս մօտենցնէր Իրեն ու ասոր համար Աստ-

ուած մարդուն տուաւ կեանքի փոխանցման զօրութիւնը, ա՛յն զօրութիւնը որով ծնողքը կեանք կը ստանայ և յառաջիկային զայն իր տղոցը կը փոխանցէ։ Որպէս զի ասիկա ի գլուխ ելլէր, երբ Աստուած Ադամը և Եւան ստեղծեց, արու և էգ ըրաւ զանոնք և օժտեց հրաշալի զօրութեամբ մը զոր դրաւ անոնց մէջ իբր նուիրական ձիրք մը։

Կը տեսնես, սիրելի բարեկամս Հրանտ, թէ այն խնդիրը որ սեռի հետ առնչութիւն ունի և որու մասին անմիտ տղաք և վատթարայեալ մարդիկ կը խորհին ու կը խօսին այնքան ռամկօրէն և սխալ կերպով, պէտք է որ ուսուցուի և խօսուի միայն ակնածանօք ու մաքրութեամբ։ Աստուած այրը և կինը տարբեր ստեղծեց։ Ան տուաւ կնոջ՝ շնորհալի մարմնոյ ձեւ մը և ուրիշէ մը կախում ունենալու զգացումը և մարդուն տուաւ իր լայն ուսերը և աւելի մեծ զօրութիւն մը որպէս զի կարենայ հսկել և պաշտպանել կինը ոչ միայն արտաքին ֆիզիքական վտանգներու, այլ մտածման, բանի և արարքի ամէն տեսակ անմաքրութեան դէմ։ Ոչ մէկ տղայ կամ մարդ կրնայ սեռի հետ առնչութիւն ունեցող նիւթերու մասին խորհիլ առանց ակնածանքի և չանպատուել զԱստուած ու սխալի մէջ չձգել իր անձը։

Ինչպէս որ տեսար, այն փոխադարձ շահագրգռութիւնը, որով ծնող թռչունները կը խնամէին բոյնին մէջ գտնուած ձագերը, այնպէս ալ ամէն օր կը տեսնես քու ծնողացդ սէրը և խանդաղատանքը շատ մը կերպերով, և եթէ մտածող տղայ մըն ես, ինչ որ կ'ենթադրեմ, հարկաւ հարցուցած ես ինքզինքիդ թէ ինչո՞ւ համար հայրիկը կամ մայրիկը ա՛յնքան կը սիրեն զքեզ և իրական հաճոյք մը կը զգան քեզի համար ընելով այնպիսի բան մը զոր աշխարհի վրայ ապրող ուրիշ որ և է անձ պիտի չուզէր կամ կարող պիտի չըլլար քեզի համար

ընել ա՛յնքան անձնուէր և սիրաշեղ կերպով մը։ Գիտե՞ս ըսել թէ ինչո՛ւ համար։ Որովհետև մայրդ և հայրդ քու մէջդ կը գտնեն ինքզինքնուն վերարտադրութիւնը, դուն մաս ես անոնց, դուն մինակ մայրիկին մասը չես, անոր համար որ Աստուած դքեզ առաջին անգամ անոր տուաւ և դուն այն աստուածային ու խորհրդաւոր կերպով զարգացար անոր մարմնոյն մէջ որ քեզ տուաւ քու մարմնոյդ բոլոր անդամները, այլ հայրիկին ալ նոյնքան կը սիրէ քեզի, որովհետև դուն անո՛ր ալ մարմնոյն մասը կը կազմես։ Աստուածաշունչին մէջ ըսուած է կնոջ և ամուսնոյն նկատմամբ. «Եւ անոնք երկուքը մէկ մարմին պիտի ըլլան» ու այսպէս հայրդ ու մայրդ մէկ եղած են քու մէջդ և պզտիկ քրոջդ մէջը, որ տակաւին նոր եկաւ ձեր տունը Աստուծոյ հրամայած կերպովը զոր Ան հաստատեց իբր միջոց մը այնքան սերտօրէն իրարու կապելու համար հայրերը, մայրերը և տղաքը։

Արդէն ըսի թէ արարչագործութենէն ի վեր կեանքի բոլոր ձևերը կը սկսին ձուով մը։ Ասիկա ճշմարիտ է նաև մարդկային կեանքին համար։ Բայց ձուն կնոջ մարմնոյն մէջ շատ փոքր է, այնքան փոքր, որ առանց խոշորացոյցի չի տեսնուիր։ Նոյնքան փոքր է նաև սերմը, որ կը գտնուի այր մարդուն մէջ կազմուած հեղուկին մէջ և որով մաքուր ու սրբազան ամուսնութեան պարագային Աստուած հրամայած է որ ձուն տակաւին կնոջ մարմնոյն մէջ գտնուած ատեն արգասաւորուի ամուսնոյն մաքուր մարմնական հպմամբ և թէ առանց այսպիսի հպման ձուն երբեք կեանք չպիտի արտադրէր։

Որպէս զի դուն կարենաս աւելի կատարեալ կերպով ըմբռնել կեանքի սկզբնաւորութեան խնդիրը, պիտի կարդամ քեզի, բժշկուհի Մէրի Ուըտ Ալէնի գրած մէկ գիրքէն հատուած մը, որով հեղինակը՝ խոհական պըզտիկ տղու մը և մօր միջև տեղի ունեցած խօսակցու-

թիւն մը մէջ կը բերէ, ուրկէ կը հասկցուի թէ մայրը խմաստութեամբ նախամեծար կը համարի սորվեցնել իր տղուն ճշմարտութիւնը քան թէ ձգելու որ դպրոցի կամ փողոցի ապականարար ազդեցութեան ենթարկուի։

«— Մա՛յր, ո՞րքան մեծ էի երբ առաջին անգամ սկսայ ապրիլ, հարցուց պզտիկ աղջիկ մը։

— Երբ առաջին անգամ սկսար ապրիլ, սիրելի զաւակս, շատ պզտիկ որդ մըն էիր միայն, դնդասեղի մը գլուխէն աւելի պզտիկ, միայն խոշորացոյցով կը տեսնուէիր։

— Այն ատեն, մայրիկ, եթէ այդքան պզտիկ էի, ուրեմն կրնայի կորսուիլ։

— Կը կորսուէիր սիրելի զաւակս, եթէ երկնային բարի Հայրը մասնաւոր խնամք տարած չըլլար քեզի համար. Անիկա գիտէր թէ ո՛րքան թանկագին են պզտիկները, անոր համար մօրը մարմնոյն մէջ պզտիկ սենեակ մը շինած է, ուր անոնք կրնան ազատ մնալ ամէն վտանգէ, մինչեւ որ պէտք եղած չափով մեծնան՝ առանձին կարենալ ապրելու համար։

— Ու ես ալ քու մէջդ այդպիսի պզտիկ սենեակի մը մէջ ապրա՞ծ եմ։

— Այո՛ սիրելիս։

— Բայց ի՞նչպէս կ'ուտէի և կը շնչէի։

— Ես քեզի համար կ'ուտէի և կը շնչէի։

— Դուն գիտէի՞ր թէ ես հոն էի։

— Այո՛, երբեմն քու պզտիկ ձեռքդ կամ ոտքդ սենեակին պատին կը զարնուէր և ես կը զգայի ատիկա ու կ'ըսէի. իմ սիրելիս կը խօսի ինծի և կ'ըսէ. Մայր հոս եմ. այն ատեն կը փափաքէի պատասխանել. Բարի լոյս, պզտիկս, մայրիկը կը սիրէ քեզ ու յետոյ կը փորձէի մտքիս առջեւ բերել թէ ի՞նչ կերպարանք պիտի ունենայիր երբ առաջին անգամ զքեզ տեսնէի։

—Ո՞րքան ատեն մնացի հոն, մայրիկ։

—Երեք քառորդ տարի. ու ամէն օր կը մեծնայիր եւ որովհետեւ կ'ուզէի որ դուն երջանիկ ըլլաս, ես ալ կը փափաքէի միշտ երջանիկ ըլլալ եւ հոգ կը տանէի աղէկ սնունդ առնելու, որպէս զի դուն ալ ուժով ըլլաս, եւ կը փորձէի ազնիւ, համբերող ու յարատեւող ըլլալ, վերջապէս ամէն բան լաւագոյն կերպով կ'ընէի քեզի համար, որովհետեւ գիտէի որ ամէն ինչ որ ես կ'ընէի, պիտի նպաստէր քեզի։

— Բայց մայրիկ, ի՞նչպէս կ'ըլլայ որ քու կերածդ զիս կը սնուցանէր։

—Իմ սնունդս արեան կը փոխուէր եւ արիւնը քեզի կուգար ու զքեզ կը սնուցանէր։

— Բայց ի՞նչպէս կ'ըլլայ ատիկա։

—Դուն երբեք տեսա՞ծ ես մայրիկին ալիւրագունդեր շինելը։

—Այո՛, դուն շաղուած խմորը կ'առնես եւ խնձորը մէջը կը դնես ու ամբողջը մէկ կը ճզմես եւ իրարու կը խառնես։

—Այո՛, դուն ալ շինուած ես ալիւրագունդի մը պէս. քու մորթդ չորս կողմդ պատած է ինչպէս խմորը խնձորին շուրջը եւ մարմնոյն առաջակողմը, միեւնոյն տեղին վրայ հաւաքուած է, այդ տեղը պորտ կը կոչենք։ Քու ծնելէդ առաջ, մորթը այս կէտին վրայ շարունակուած էր երկար կապի մը ձեւով որ կապուած է մայրիկին եւ անոր միջոցաւ արիւնը կուգար դէպի քեզ։ Երբ ժամանակը կը հասնէր որ դուն լոյս աշխարհ գաս եւ ինձմէ անջատ ապրիս, քու պզտիկ սենեակիդ դուռը, ինծի համար մե՜ծ ցաւով եւ նեղութեամբ կը բացուէր եւ դուն աշխարհ կուգայիր կամ կը ծնէիր, ինչպէս որ սովորութիւն ունինք ըսելու։ Այն ատեն կապը կամ խողովակը որ զքեզ ինծի հետ յարաբերութեան մէջ

դրած էր, կը կտրուէր և կապուելով կը կազմէր պորտը կամ այն տնկը որ ամբողջ մարմնոյն մորթը եկած իրար միացած է։ Երբ դուն առաջին անգամ ըլլալով շունչ առիր և օդը քու թոքերուդ մէջ գնաց, սկսար լալ ու այն ատեն հասկցայ որ կենդանի էիր և խնդալով հարցուցի. Աղջի՞կ է թէ մանչ։ Քեզի լուալէ և հագուեցնելէ յետոյ ինծի բերին և թեւերուս մէջ դրին ու առաջին անգամ ըլլալով տեսայ դէմքդ զոր ա՛յնքան երկար ատենէ ի վեր կը սիրէի և հիմա կրնաս ըմբռնել դուն թէ ինչո՛ւ համար այնքան սիրելի ես ինծի։

— Ով մայրիկ, հիմա կը հասկնամ թէ ինչո՛ւ համար քեզի աշխարհիս վրայ ամէնէն աւելի կը սիրեմ, գոչեց տղան, տաք համբոյրներով և սիրազեղ արցունքներով։»(*)

Ապահով եմ, սիրելի Հրանտ, որ ո՛չ մէկը կրնայ պէտք եղած կերպով ուսումնասիրել կեանքի ծագման խորհուրդը, առանց իր մէջ երկիւղը և յարգանքի զգացումը սնուցած ըլլալու. այս ամբողջ խնդրոյն մէջ Աստուած կը գործէ այնպիսի հրաշալի խորհուրդով մը որ նոյն իսկ ամէնէն իմաստուն մարդը ո՛չ կրնայ լիապէս ըմբռնել զայն և ո՛չ ալ կրնայ բացատրել։

Այս ու ասկէ առջի ձայնաթիթեղներով փորձեցի որքան որ կարելի էր, ճշմարիտ, կատարեալ և գոհացուցիչ պատասխան մը տալ այն հարցումին, զոր երկու շաբաթ առաջ դուն քու մօրդ ուղղած էիր և որուն ստանձնեցի պատասխանել քու մօրդ խնդրանքին վրայ։ Ուրիշ խնդիր մըն ալ կայ որ այնքան սերտ կերպով կապուած է մեր նկատողութեան առած խնդրոյն հետ և հրաժեշտ առնելէ առաջ վաղը իրիկուն քու ուշադրութիւնդ պիտի հրաւիրեմ անոր վրայ։

(*) Տե՛ս Ի՞նչ Պէտք է Գիտնայ Դեռատի աղջիկ մը: Ծ. Թ.

# ԵՕԹԵՐՈՐԴ ՁԱՅՆԱԹԻԹԵՂ



*Հօր խնդրանքը շարունակելու համար խօսակցութիւնը. — Ինչո՞ւ տղաք իրենց ծնողներուն կը նմանին. — Ծնողներ թէ մարմնական եւ թէ մտաւորական առանձնայատկութիւններ կը փոխանցեն. — Վատառողջ ծնողներ չեն կրնար առողջ զաւակներ ունենալ. — Տղու մը նախնական վիճակը ցոյց կուտայ թէ ի՞նչ պիտի ըլլայ իր մէջ մարդը եւ ի՞նչ պիտի ըլլան իր տղաքը. — Տղուն պարտականութիւնը հանդէպ անոնց որոնք իրմէ վերջը պիտի գան. — Ստացուած աղէկ յատկութիւն մը պէտք չէ փճացնել. — Ժառանգականութիւնը ճակատագրականութիւն մը չէ. — Պարտականութիւն բարւոքելու համար այն զոր ունինք:*

**Սիրելի բարեկամս Հրանտ,**

Այսօր քու հօրմէդ նամակ մը առայ որ ինծի համար մեծ ուրախութեան պատճառ մը եղաւ. անիկա ալ ունկնդրած ըլլալով քեզի ամէն իրիկուն ղրկած ձայնաթիթեղներս, եւ հաճոյակատար խօսքերով գնահատելով զանոնք, խնդրած է ինծմէ շարունակել իմ խօսակցութիւնս մտածմանց նոյն ուղղութեամբ, որ կը յուսամ, թէ՛ թելադրիչ եւ թէ՛ ճշմարիտ արժէք ունեցող բան մը պիտի ըլլայ քեզի համար։ Ընդունեցի իր խնդրանքը եւ վաղը իրիկունէ պիտի սկսիմ մէկ քանի խօսակցութիւններով ցոյց տալ քանի մը սխալ ճամբաներ, որոնց մէջ մանչեր վնաս կը հասցնեն իրենց մարմնոյն եւ պիտի ըսեմ քեզի թէ դուն ի՛նչպէս կրնաս քու մարմինդ մաքրութեան եւ զօրութեան մէջ պահել։

Երէկ իրիկուն քեզի ըսածներէս կարծեմ թէ կարող պիտի ըլլաս ըմբռնելու թէ ինչո՛ւ համար այնքան յաճախ տղաք իրենց ծնողաց կը նմանին, անոնց պէս կը վարուին, անոնց պէս կը խորհին։

Աստուած ոչ միայն հրամայեց որ ամէն բոյս իր տե-

սակին նման հունտ կրէ, այլ հրամայեց նաև որ իր յաջորդներուն փոխանցէ իր ամէնէն պզտիկ յատկանիշներն անգամ։ Ինչ հունտ որ ցանելու ըլլաս, այդ հունտէն ելած բոյսը ամէն կերպով կը նմանի այդ հունտը յառաջ բերող բոյսին։ Հաւուն ձուէն երբեք հաւէ տարբեր կենդանի մը յառաջ չի գար, նոյն բանն է նաև տղոց մասին. իրենց մարմնական յատկութիւնները շատ մը տեսակէտներով իրենց ծնողքէն առնուած են, ու այդ յատկութիւններուն մէջ միացած են մօր և հօր բնութիւնները և այս պատճառով տղան մարմնաւորումն է երկուքին։ Երբեմն տղան ծնողքէն մէկուն կը նմանի արտաքինով և միւսին նկարագրով. երբեմն տղուն աչքերը գոյնով հօրը աչքերուն կը նմանին և երբեմն ալ մօրը, երբեմն ալ այնպէս կը պատահի որ տղուն աչքերուն գոյնը արտայայտութիւնն է երկու ծնողաց միացեալ ազդեցութեան կամ նոյն իսկ իրենց մեծ հօր և մեծ մօր։ Նոյն բանը կրնանք ըսել նաև մազին գոյնին, տեսակին և քանակին նկատմամբ, ինչպէս և ուրիշ ֆիզիքական միւս արտայայտութեանց, որոնք անձի մը արտաքինը կը ձևացնեն։

Ինչ որ ճշմարիտ է արտաքին երևոյթի տեսակէտով, ճշմարիտ է նաև առողջութեան տեսակէտով, զոր ծնողքներ կը փոխանցեն իրենց տղոց։ Երբ հայրեր և մայրեր առողջ չըլլան, իրենց տղոց չեն կրնար առողջութիւն փոխանցել, եթէ ծնողքներ տկար, հիւանդոտ ըլլան, տղաքն ալ իրենց պէս պիտի ըլլան։ Կը տեսնես ուրեմն թէ որքան կարևոր է որպէս զի հայրեր ու մայրեր առողջ ըլլան, եթէ կը փափաքին առողջ, ուրախ և զուարթ զաւակներ ունենալ։ Բայց եթէ մարդիկ կը փափաքին առողջ ըլլալ և զայն իրենց տղոց փոխանցել, պէտք է որ տղոյ եղած ատեննին պահպանեն իրենց առողջութիւնը։ Ինչ որ մէկը տղայութեանը ըրած է,

ըստ այնմ կ'որոշուի թէ ի՛նչ վիճակ պիտի ունենայ կատարեալ այր մարդ մը ըլլալուն: Ինչ որ դեռատի մանչ մը կ'ընէ, անով կ'որոշուի ինչ որ յառաջիկային չափահաս մարդը պիտի ըլլայ, և այսպէս եթէ դուն հոգ չի տանիս առողջութեանդ, կամ թէ որ և է բան մը ընես որ անձիդ վնասէ, այն ատեն ապագային, հայր ըլլալու պարագայիդ, քու տղաքդ այպանելաբար պիտի կրեն քու անհոգութեանդ և անխոհեմութեանդ գէշ հետեւանքները:

Նոյնը ճշմարիտ է նաև մտաւորական յատկանիշներուն համար. այս կէտին մէջ ալ տղաք իրենց ժառանգածը կը ստանան իրենց ծնողքէն: Նկարագրով շատ մը տղաք կը նմանին իրենց ծնողքին մէկուն, ուրիշներ նմանութիւններ ցոյց կու տան երկուքին ալ, մինչդեռ կան այնպիսիներ ալ որոնք կը ժառանգեն միացեալ ազդեցութեանց հետեւանքը, որ մէկ երկու սերունդ անցնելով գոյացած է:

Եթէ այս բաները ճշմարիտ են, բան մը որ վեր է ամէն վէճէ, այն ատեն կը տեսնես թէ ինչպէս ազդեցութիւններ, որոնք քու ծնելէդ տարիներ առաջ արդէն գոյութիւն ունէին, ատոնք ամէնքն ալ հաւաքուած և միացած եկած են ընելու քեզ այն ինչ որ ծնած ատենդ էիր, և այսպէս նոյն եղանակով, ինչպէս որ դուն այսօր ես և ինչ որ ֆիզիքական ուժով, մարմնական առողջութեամբ, մտքով և նկարագրով պիտի ըլլաս, նոյնը պիտի ըլլան քու տղաքդ անկից վերջ: Եթէ դուն վեհանձն, բարի և ճշմարտասէր ես, քու տղոցդ համար ղիւրին բան մըն է վեհանձն, բարի և ճշմարտասէր ըլլալ, եթէ դուն անհնազանդ, անգութ, խաբող ըլլայիր քու ընթացքովդ պիտի դժուարացնէիր քու տղոցդ նոյն բաները չընելը, բայց եթէ դուն ուրախութեամբ հնազանդիս ծնողացդ, պատուես և սի-

րես զանոնք, սիրես զԱստուած և ծառայես Անոր, այն ատեն պիտի դիւրացնես քու տղոցդ քեզի սիրելը և քեզի հնազանդիլը, ու բարեպաշտ և ուղղամիտ մանչեր ու աղջիկներ ըլլալը։

Այս խրիկուան ըսածէս պիտի տեսնես բան մը, որու մասին Աստուածաշունչը խօսելով կ'ըսէ. «Ոչ մէկ մարդ կ'ապրի ինքնիրեն և ոչ մէկ մարդ կը մեռնի ինքնիրեն։» Մենք կապուած ենք սերունդներու, որոնք մենէ առաջ էին և պարտականութիւններ ունինք հանդէպ այն սերունդներուն, որոնք մենէ վերջը պիտի գան։

Դուն օժտուած ես Ֆիզիքական և մտաւորական աղէկ ուժերով և ասիկա քեզի համար խորին երախտագիտութեան պատճառ մը ըլլալու էր և ոչ թէ չռայլութեան։ Զօրաւոր մարմին ունեցողներէն ոչ մէկը պէտք էր որ առանց գութի, զգացումի և առանց համակրութեան խորհէր անոնց մասին, որոնք Ֆիզիքական թերութիւններ ժառանգած են. պէտք է յիշենք նաև թէ ժառանգականութիւնը ճակատագրականութիւն մը չէ. թէև զօրաւոր մարմիններ ստացած ենք, սակայն կրնանք քայքայել զանոնք ղեղծումով, և այսպէս, խնամքով և յարատեւութեամբ, անոնք որոնք տկար մարմիններ ունէին և նուազ մտքի կորով, կրնան շատ բան ետքէն ստանալ և նոյն իսկ գերազանցել զանոնք, որոնք բնութենէն կամ ժառանգութեամբ աւելին ստացած էին, բայց որոնք պէտք եղած հոգը չեն տարած իրենց ծնողքէն իբր ժառանգութիւն և Աստուծմէ իբր ձիրք ստացածնուն նկատմամբ։ Մեր մեծ հոգը ըլլալու էր բարւոքել մեր բոլոր ունեցածը և ջանալ որ անոնք որոնք մենէ վերջը պիտի գան, մեր մոլութեան և յիմարութեան երեսէն բնաւ տանջուելիք բան մը չունենան։

# ԵՐԿՐՈՐԴ ՄԱՍ

## Ի՞նչպէս մանչերու վերարտադրող գործարանները կը վնասուին զեղծումի հետեւանքով

# ՈՒԹԵՐՈՐԴ ԶԱՅՆԱԹԻԹԵՂ

*Մարդս կենդանի մըն է. — Ունի խելք, բարոյական եւ գիտակցութիւն. — Ինչպէս խելքը, բարոյականն ու գիտակցութիւնը հիմք կը դնեն բաղդատական կազմագիտութեան. — Նմանութիւն կեսեր մարդ էակին եւ չորքոտանի կենդանեաց մարմիններուն միջեւ. — Ընդմէջ մարդուն եւ թռչնոց. — Մարդս միակ կենդանին է որ կատարեալ ձեռք մը ունի. — Առանց ձեռքի մարդս չէր կրնար կենդանիներէն շատ վեր ըլլալ. — Ձեռքովն է որ անիկա կը շինէ, կը կազմէ եւ իր նմանները կ'ուրախացնէ. — Ձեռքով է որ կը քանդէ, կը սպաննէ եւ վնասներ կը հասցնէ. — Իր ձեռքովն է որ ինքզինքը կ'ապականէ եւ կը նուաստացնէ:*

**Սիրելի բարեկամս Հրանտ,**

*Հօրդ խնդրանքին վրայ այս իրիկուն կը ձեռնարկեմ շարունակել, ժամանակի մը համար, իմ խօսակցութիւններս, ու այս վայրկեանին քու ուշադրութիւնդ կը հրաւիրեմ կենդանիներու միջեւ նմանութեան մը, զոր հաւանաբար նշմարած ես։*

*Երբ կենդանիներու վրայ կը խօսինք, պէտք է միտքդ բերես որ մարդն ալ կենդանի մըն է, թէեւ Աստուած զայն կենդանական դասակարգին ամէնէն բարձր աստիճանին վրայ դրած ըլլայ։ Աստուած մարդս օժտած է մտաւորական ուժերով, այնպէս որ անիկա կրնայ խորհիլ ու դատել. տուած է անոր բարոյական զգացում, որով ուղիղը սխալէն կը զատէ, օժտած է զինքը խղճմտանքով որ հաւանութիւն կը յայտնէ երբ անիկա ուղիղ բան մը կ'ընէ և կը հակառակի երբ սխալ բան մը կը գործէ։*

*Մարդս կրնայ իր մտքին կարողութիւնները ապականել զանոնք գէշ նպատակներու համար գործածելով, չարիք գործելով, իր նմանին վնաս հասցնելով, նոյն իսկ*

դաւադրելով Աստուծոյ դէմ։ Մարդս կրնայ նաև տկարացնել, սպաննել իր բարոյական զգացումը, ճիշդ ինչպէս որ իր մտաւորական կարողութիւնները կ'ընէ, երբ կը թերանայ զանոնք դործածելու։ Այս հետեւանքները կը տեսնուին երբ տղայ մը դպրոց չերթար, անոնք կը զանցուի կարգաւորելու և մշակելու իր միտքը, փոյթ չունենար եկեղեցի երթալու ու կը մերժէ աղէկ գիրքեր կարդալ կամ չուզեր գործադրել այն բարոյական զգացումը, որ Աստուած սահմանած է որպէս զի ի գործ դրուի և զարգանայ։ Շատ մը մարդիկ խուլ կը դառնան խղճմտանքին՝ միշտ ու յարատեւ կերպով, մերժելով հնազանդիլ անոր ձայնին, մինչև որ խղճմտանքը զիրենք սանձէ, կը թերանան գիտակցելու անոր խայթերուն. Նոյն բանն է երբոր զարթուցիչ ժամացոյց մը դնես ննջասենեակիդ մէջ և առաւօտեան ժամը հինգին համար լարես։ Առաջին առտուն երբ անիկա զարնէ ընդոստ պիտի ցատքես, և եթէ անմիջապէս ելլես ու հագուիս, անկից վերջ յաջորդաբար ամէն առտու, երբ անիկա զարնէ դուն արթնցած պիտի ըլլաս, պիտի պատասխանես անոր կոչին. բայց եթէ երբ ժամացոյցը հնչէ ու դուն ինքզինքիդ ըսես թէ վայրկեան մ'ալ պիտի քնանամ, և անզգուշութեան մէջ իյնաս ու քնանաս մինչև որ հայրդ կամ մայրդ արթնցնէ զքեզ, յաջորդ առտուն երբ ժամացոյցը զարնէ. կրնայ ըլլալ որ արթննաս, բայց եթէ միւս կողմիդ վրայ դառնաս ու քնանաս երկու կամ երեք առաւօտ, յետոյ նորէն ժամացոյցը զարնելուն, ա՛լ բնաւ չպիտի արթննաս անոր ձայնէն։ Նոյն բանն է նաև խղճմտանքը, եթէ մենք պատասխանենք իր հրաւէրներուն, ամէն բան աղէկ է, սակայն եթէ անտարբեր գտնուինք խղճին թելադրածներուն կամ խայթերուն, ատեն մը անզգայելէն վերջը այլ ևս անոր ձայնը երբեք չենք լսեր։ Ու սակայն ոչ թէ անոր համար որ խղճմը-

տանքը կը դադրի խօսելէ, այլ անհոգ գոռալով պատասխանելու իր թելադրութեանց, ատեն մը վերջը անտարբեր կը գտնուանք իր խայթերուն և կը շարունակենք ապրիլ բացարձակ մոլութեան մը մէջ, ճիշդ իբրև թէ բնաւ խղճմտանք ունեցած չըլլայինք։

Գիտես թէ որքան որ մարդս կենդանի մըն է, սակայն միւս բոլոր կենդանիներէն գերազանց է, իմացականութեան, բարոյական զգացման և խղճմտանքի ձիրքերով զոր Աստուած իրեն տուաւ։

Սակայն կը փափաքիմ ուշադրութիւնդ հրաւիրել մէկ քանի ուշագրաւ նմանութեանց և տարբերութեանց վրայ, որոնք մարդուն և ուրիշ կենդանեաց մարմիններուն վրայ կը տեսնուին։ Ա՛րդ, եթէ դուն չորս ոտքի վրայ եկած գետնի վրայ քալես, պիտի նշմարես թէ մեծ նմանութիւն մը կայ քու մարմնոյդ ձևին և ձիու մը, կովու մը, շան մը և բոլոր չորքոտանի կենդանեաց մարմնոյն ձևին մէջ։ Այս դիրքին մէջ կեցած ատենդ պիտի տեսնես թէ քու բազուկներդ կը համապատասխանեն վերոյիշեալ կենդանիներուն առջևի ոտքերուն։

Եթէ ոտքի վրայ կենաս և թևերդ ետևդ տանիս և զանոնք աղէկ մը կռնակիդ վրայ պահես, պիտի տեսնես թէ այդ դիրքին մէջ մարմինդ կը նմանի թռչնոյ մը մարմնոյն, քու սրունքներդ և ոտքերդ համապատասխանելով թռչունի մը բազուկներուն և ոտքերուն և թևերդ համապատասխանելով անոնց թևերուն։ Այսպիսի նմանութեանց ուսումնասիրութիւնը գիտունները կը կոչեն բաղդատական անդամագիտութիւն։ Այսպէս, կը տեսնես թէ կարգ մը նմանութիւններ կան մարդուն և ուրիշ կենդանեաց մարմնոյն ձևին և յօրինուածքին միջև։

Բայց միայն մասնաւոր պարագայ մը կայ ուր մարդկային մարմինը միւս բոլոր կենդանիներու մարմինէն կը տարբերի։ Մարդս միակ կենդանին է որուն Աստուած

կատարեալ ձեռք մը տուաւ։ Նոյն իսկ հակառակ մեր մտաւորական ձիրքերուն, եթէ Աստուած մեզի մեր ձեռքերը տուած չըլլար, մարդուն համար ֆիզիքապէս անկարելի պիտի ըլլար ամէնէն ստորին կենդանեաց մակարդակէն վեր բարձրանալ, սակայն իր ձեռքերովն է որ մարդս կը պատրաստէ իր սնունդը, իր դեղը, իր զգեստը կը շինէ, տուներ կը շինէ որոնց մէջ կ'ապրի, գիրքեր կը գրէ ու կը տպագրէ, ամէն տեսակ մեքենաներ կը շինէ, կը հաստատէ երկաթուղիի և շոգենաւի գիծեր որոնցմով կ'անցնի նոյն իսկ թռչունները։

Սակայն մարդս, միտքին մէջ գտնուած չարութեան և սրտին մէջ գտնուած վատութեան համար նորէ՛ն իր ձեռքերը կը գործածէ, իր նմաններուն միշտ ու վնաս հասցնելու համար։ Կը շինէ մեծ թնդանօթներ և թնդանօթաձիգ նաւեր և ուրիշ մահու գործիքներ, որոնցմով պատերազմի մէջ իր նմանը կը սպաննէ իր սրտին մէջ գտնուած վատութենէն մղուելով և քաջալերուելով ու օժանդակութիւն ստանալով սատանայէն և ուրիշներէն, որոնք իրեն պէս վատասիրտ են, մարդս ձեռքերը կը գործածէ գլուխ հանելու համար այնպիսի բաներ որոնք Աստուծոյ աչքին խիստ անհաճոյ են։

Զարմանալի է ըսել թէ մարդս հաւանաբար միակ կենդանին է որ միշտ չարաչար կը գործածէ և աստիճանազուրկ կ'ընէ ի՛ր իս՛կ մարմինը, և ասիկա դիւրաւ կարելի չպիտի ըլլար եթէ Աստուած իրեն ձեռքեր տուած չըլլար, որոնք օգտակար ըլլալու և կեանքի մէջ իրեն օժանդակելու սահմանուած են։

Որպէս զի ձեռքը իր իսկ մարմինը ստորնացնելու կամ թէ իր նմաններուն վնաս հասցնելու չի գործածուի, Աստուած մարդս օժտած է իմաստութեամբ, բարոյական զգացումով և խղճմտանքով, որպէս զի իր ձեռքերը իրեն համար ըլլան օժանդակութեան և օրհնութեան աղբիւր մը և ոչ թէ միջոց մը ապականութեան և վնասի։

# ԻՆՆԵՐՈՐԴ ԶԱՅՆԱԹԻԹԵՂ

Աստուծոյ նպատակը մեզի ձեռքեր տալով.— Այն վսեմութիւնը, զոր Աստուած ունեցաւ մեր վրայ անոնց գործածութեան մասին.— Այր մարդուն մէջ սեռային անդամը ցուցադրուած.— Տգիտութեամբ է որ յաճախ մանչեր գիշերուան կը ծանօթանան.— Գերաններու վրայէ վար սահած ատեն, ծառերու վրայ մագլցելու միջոցին, եւն.— Տղէք կամ չար սպասաւորներու վտանգը.— Մտացիութիւնը անհրաժեշտ է ապահովութեան համար:

**Սիրելի բարեկամս Հրանտ,**

Աստուած մարդուս ձեռքեր տուած ատեն տուաւ անոր նաև խելք, բարոյական զգայում և գիտակցութիւն մը, որ զանոնք կարենայ ուղիղ կերպով գործածել: Աստուած կ'ուզէր հասկցնել թէ իր ձեռքերովը մարդը պէտք էր որ ինքզինքը կենդանիներէն անհունապէս վեր բարձրացնէր, բայց կարգ մը մարդիկ և կարելի է ըսել նաև կարգ մը տղաք իրենց ձեռքերը կը գործածեն ստորնացնելու համար ինքզինքնին, նոյն իսկ ամէնէն ստորին կենդանիէն ալ վար իջնելով: Փոխանակ իրենց ձեռքերը գործածելու ինչպէս իմացական ու բարոյական անհատներու վայել է, այնպէս մը կը գործածեն զանոնք, որ կ'ապականեն իրենց մարմինը, չօշափելով ու խաղալով իրենց սեռական անդամին հետ այնպիսի եղանակով մը, որ կրնայ իրենց միայն վայրկենական հաճոյքի զգացում մը տալ և որ սակայն կը վերջանայ բարոյական, մտաւորական և ֆիզիքական ուժերու ամէնէն ծանր վնասներով: Աստուած մեզի սեռային անդամ մը կամ գործարան մը չէ տուած որպէս զի այդ կերպով գործածուի և անոր այդօրինակ գործածութիւնը կը կոչուի ինքնապղծութիւն կամ գիջութիւն:

Ի բաց առեալ մէկ հատ մը, մարդը այն միակ կենդանին է, որուն սեռային գործարանը մարմնոյն դուրսի կողմը կը գտնուի, և որ կրնայ մեքենականօրէն և ֆիզիքապէս ինքզինքը պղծել. այն հազուադէպ օրինակները որոնք հակառակ ըլլան այս յայտարարութեան, դիպուածական են և բոլորովին բացառիկ: Սեռային անդամին պահպանման և գործածութեան մասին Աստուած ամէնէն մեծ վստահութիւնը ունեցած է մարդուս բարոյական և իմացական զգացումին վրայ: Աստուած ուրիշ ոչ մէկ կենդանիի վրայ այնպիսի վստահութիւն և պատասխանատուութիւններ դրած է, ինչպէս մարդուս վրայ: Բայց մարդկային արտին տկարութեան պատճառաւ, սատանային փորձութիւնները և երբեմն ալ այս կարեւոր խնդրոյ նկատմամբ տգիտութեան հետեւանօք նոյն իսկ դեռատի մանչեր կը սկսին սխալ ճամբէ երթալ և չի գտնելով մէկը որ լուսաբանէ զիրենք և զգուշացնէ, կը հետեւին իրենց չար սովորութիւններուն, որոնց արդիւնքը կ՚ըլլայ մեծ վնաս իրենց և եթէ չի դադրեցնեն սկսուածը, կը գլորին մեծ մոլութեան և անկման մէջ:

Երանի՜ թէ կարենայի ըսել քեզի որ միայն սակաւաթիւ մանչեր ճանչցած են այս մոլութիւնը, բայց չեմ կարծեր որ կարելի ըլլայ այդ բանը ըսել: Միւս կողմէն կրնամ յայտարարել սակայն թէ բազմաթիւ մաքուր մտքով ու անմեղ մանչեր վարժուած են այդ սովորութեան՝ շատ անմեղ եղանակներով և սկիզբները նոյն իսկ չեն կասկածած թէ իրենց այդ սովորութիւնները ստորին ու վնասակար բան մը եղած ըլլան: Բազմաթիւ տղաք շատ մատղաշ հասակի մէջ ունեցած են այդ զգացողութիւնը, սանդուղներու բազրիքներուն վրայէն վար սահելով կամ երբեմն ալ ծառերու վրայ մագլցելու կամ անոնցմէ վար սահած ատեննին, ձիով գացած միջոցնուն, ու եղած են այնպիսի տղաք ալ որոնք

սեռային անդամին անմաքուր ըլլալուն համար այս մասերուն մէջ տեսակ մը քերուըտուք զգացած են և երբ քերելով կամ շփելով ուզած են վերջ մը տալ այդ մարմաջին, ինքնին առաջնորդուած են ինքնապղծման սովորութեան։ Երբեմն ալ աղիքներուն պնդութիւնը կամ թէ աւելի պարզ խօսելով ամէն առաւօտ կանոնաւոր կերպով դուրս չելլալը, երբ յաճախ կրկնուի կամ երկար ատեն տեւէ, յառաջ կը բերէ մարմնոյն այդ մասին մէջ տեսակ մը դիւրագգայութիւն և ինքնապղծման կ՚առաջնորդէ։

Նմանօրինակ կամ նոյն իսկ աւելի մեծ դիւրագգայութիւն մը սեռային անդամին, յաճախ յառաջ կուգայ աղիքներու ամէնէն վարի մասին մէջ գոյացած տեսակ մը որդերէ։ Բայց կը ցաւիմ ըսելու նաև թէ գիջութիւնը երբեմն տղու մը կողմէ կ՚ուսուցուի ուրիշ տղու մը և տղոց շատ պզտիկ եղած ատենը նոյն իսկ տղաք խնամող կիներ երբեմն չգիտնալով այն սոսկալի չարիքը և ախտաւոր հետեւանքները իրենց արարքին, այս քանդիչ սովորութիւնը ի գործ կը դնեն շատ պզտիկ տղոց վրայ, նպատակ ունենալով ցրուել անոնց մտածումները և այսպէս հեռու կեցնել զանոնք լալէ, կամ որպէս զի երբ զանոնք անկողին դնեն հանգիստ մը պառկին ու անմիջապէս քնանան։ Սոսկալի բան է խորհիլը թէ իմացականութեամբ օժտուած մարդիկ կրնան այսօրինակ արարքներու մէջ գտնուիլ, սակայն պէտք էր որ մենք աչքի առջև ունենալով այս սովորութեան յաճախ ի գործ դրուիլը, անհրաժեշտաբար ըմբռնէինք այն վտանգը, որոնց ենթակայ են տղաք և այս կերպով կարող ըլլայինք ճշմարտապէս հսկել այն փորձութեանց դէմ որոնք դուրսէն կուգան, և փրկել տղաքը ահաւոր հետեւանքներէ որոնց շատեր կ՚ենթարկուին այն գէշ գործքերուն համար զորս սկսած են իրենց տղայութեան մէջ։

Կը հաւատամ սիրելի տղաս թէ դուն ազատ պիտի ըլլաս այս և ուրիշ բոլոր տեսակ մոլութենէ։

# ՏԱՍՆԵՐՈՐԴ ՁԱՅՆԱԹԻԹԵՂ

*Սեռային անդամը իւր մաս մը վերարտադրող դրութեան.— Վերարտադրող դրութիւնը ցուցադրուած, լուսաբանուած՝ ժամացոյցի մը օրինակով.— Մտադրական դրութեան զանազան մասերը.— Աստուած մեզ վերարտադրող դրութեամբ մը օժտեց, ամենեն իմաստուն եւ ամենեն օգտակար նպատակներու համար.— Անոր մասին սխալ գաղափարներ ունենալով զննսուած անպատուած կ'ըլլանք.— Պէտք է մաքրութեան եւ պատւոյ մէջ մնալ.— Մեր մարմինները հոգւոյն սրբոյ տաճարներն են.— Սուրբ վայրը եւ սուրբերու սուրբը.— Ստեղծագործիչ ուժին հրաշալի խորհուրդը.— Ի՞նչպէս միտքը, երեւակայութիւնը եւ սիրտը կ'ապականին.— Ի՞նչ կ'ըսէ Աստուածաշունչը այս նիւթերուն նկատմամբ:*

**Սիրելի բարեկամս Հրանտ,**

*Երէկ իրիկուն ըսի քեզի թէ ի՛նչպէս կարգ մը դեռատի մանչեր և նոյնիսկ տարիքով յառաջացեալներ իրենց սեռային անդամը աւելորդ անգը և վնասակար կերպով շօշափելով, քսելով և չփելով, իրենց մարմինները կը պղծեն և կը նուաստացնեն: Աստուած տուաւ մեզ այս անդամը որպէս զի անով մեզի ծառայէ մարմնոյն աւելորդ հեղուկները դուրս հանելու և նաև զայն ըրաւ մէկը մարդկային վերարտադրող դրութեան մասերէն: Թէ որո՞նք են բոյսերուն վերարտադրող դրութիւնը կամ գործարանները ասկից առաջ ըսի քեզի. Թէ՛ արու և թէ էգ տունկերու մէջ կան գործարաններ որոնք պաշտօն ունին արտադրելու այն հունտերը որոնցմէ կեանքը յառաջ կու գայ: Վերարտադրող դրութեան բնութեան և պաշտօնին նկատմամբ կրնանք բան մը սորվիլ երբ ենթադրենք թէ ժամացոյց մը կարելի ըլլար շինուիլ այնպէս մը որ ինքնիրենը բանէր և բնաւ պէտք չունենար ժամագործին տարուելու, որպէս զի հինցած մասերուն*

տեղ նորեր դրուին. յետոյ ենթադրենք որ ժամացոյցին այդ ինքնագոյ ուժը օժտուած ըլլար նաև ուրիշ ժամացոյցներ արտադրելու ուժով, այնպէս որ երբ մէկ կողմէ ուղիղ ժամանակը ցոյց տար, ինք՝ ինքնիրենը նորոգէր իր հինցած մասերը, միւս կողմէ ունենար նաև զօրութիւնը ուրիշ ժամացոյցներ արտադրելու, պզտիկ երախայ ժամացոյցներ որոնք իրենց մէջ ունենային ոյժ մը մեծնալու, և երբ կատարելապէս մեծնային ու մեծ ժամացոյցներ դառնային, իրենց կարգին երբեմն երբեմն կարող ըլլային ժամացոյցներ արտադրելու: Այս նոր ուժը, որով ժամացոյց մը կարող պիտի ըլլար ուրիշ ժամացոյցներ արտադրել, կը կոչուի վերարտադրող զօրութիւն և եթէ ժամացոյցին մէջ ըլլային կարգ մը մասեր որոնք ամբողջովին նուիրուած ըլլային պզտիկ ժամացոյցներ արտադրելու, ժամացոյցին այդ մասերը ամբողջը մէկ պիտի կոչուէին վերարտադրող գործարաններ:

Արդ, սեռային անդամը միայն մէկ մասն է վերարտադրող դրութեան, ճիշդ ինչպէս որ մեր մարմնոյն մէջ մարսողական դրութիւնը ունինք բազմաթիւ մասերէ բաղկացեալ: Սնունդը բերնին մէջ կը տարուի և ծամուելէ ու չաղուելէ վերջը կ'անցնի ստամոքսին մէջ, ուր փոփոխութեանց ենթարկուելով աղիքներուն մէջ մտնելու յարմար վիճակը կը ստանայ ու այդ կերպով կարող կ'ըլլայ արեան մէջ մտնելու ու մարմինը զօրացնելու և կեանքը պահելու: Արդ, բերանը, դէպի ստամոքս տանող ճամբան և աղիքներու մասերը, պաշտօն մը ունին մարսողութեան գործին և սնունդին արեան մէջ մտնելուն մէջ և այս բոլոր տարբեր գործարանները միասին կը ձևացնեն մարսողական դրութիւնը: Այսպէս ալ սեռային անդամը մէկ մասն է վերարտադրող դրութեան և միւս մասերը մարդոց վրայ մասամբ մարմնէն դուրս և մասամբ ալ մարմնէն ներս են: Որով երբ ամբողջին

վրայ ուզենք խօսիլ, կ'ըսենք սեռային գործարաններ. և երբ կ'ուզենք անոնց կատարած դերերուն ակնարկել, կը կոչենք զանոնք վերարտադրող դրութիւն: Մեր մարմնոյն այս մասն ալ ստեղծած է նոյն ինքն Աստուած, ամէնէն իմաստուն և ամէնէն օգտակար նպատակներու համար: Երբեմն մանչեր չափազանց ստորին և նուաստացուցիչ կերպով կը խորհին իրենց սեռային մասերուն նկատմամբ, ու ասիկա մեծապէս Աստուած անարգել և ինքզինքնին սխալ ճամբու մէջ դնել է: Ամէն ինչ որ Աստուած ստեղծած է պէտք է որ պահուի պատուոյ և յարգանքի մէջ: Աստուած մեզի աւելի սուրբ ու աւելի նուիրական պարտականութիւն մը տուած չէ, քան եթէ մեր տեսակը վերարտադրելու գործը և մենք պէտք է որ այդ բարձր ու սուրբ պաշտօնը մեր յաւիտենական արարչին ձեռքէն յարգանօք ընդունինք, և մեր մարմնոյ այս անդամները պահենք մաքրութեան և պատուոյ մէջ: Նշանաւոր բժիշկ մը Տօքթ. Սրիրի կ'ըսէ. «Մեր Ֆիզիքական կեանքին մէջ, մեր տեսակին ծաւալումը ամէնէն բարձր և ամէնէն աստուածային գործն է», և մաքուր սիրտ մը ու խոհական միտք ունեցող ոչ մէկ մարդ կրնայ ուրիշ եզրակացութեան յանգիլ:

Ես շատ գոհ եմ, սիրելի բարեկամս Հրանտ, որ քու ծնողքդ յաճախ Աստուածաշունչ կը կարդայ և դուն մտիկ կ'ընես, և անոր զանազան մասերը կը բացատրուին քեզի, ատոր համար շատ յարմար է որ այս իրիկուն քեզի ինքնապղծման վրայ խօսիմ և յանձնարարեմ քեզի առաջին Կորնթացւոց Զ. գլխուն տասնըութերորդ և տասնըիններորդ համարները, ուր Պօղոս խօսելով այս նիւթին վրայ, կ'ըսէ. «Պոռնկութենէն փախէք»... այն որ կը պոռնկի իր մարմնին դէմ կը մեղանչէ, չէ՞ք գիտեր որ ձեր մարմինները տաճարն են սուրբ հոգիին, որ ձեր

մէջն է։» Երուսաղէմի տաճարը, ամբողջ աշխարհի մէջ ամէնէն նուիրական շէնքերէն մէկն էր, ամբողջ շինութիւնը նուիրական էր. այդ շէնքին մէջ տեղ մը կար որ կը կոչուէր «Սուրբ տեղ» և այդ սուրբ տեղւոյն ներքին մասին մէջ ա՛լ աւելի նուիրական տեղ մը կար որ կը կոչուէր «Սուրբ Սրբոց». հոս էր որ կը բնակէր անմերձենալի աստուածային ներկայութիւնը ու դէպի այս սուրբ սրբոցն էր որ ամբողջ աշխարհի վրայ գտնուած բոլոր Իսրայէլացիները կը դարձնէին իրենց դէմքերը ամենախորունկ յարգանքով։ Նմանապէս մեր ամբողջ մարմինը սուրբ է և պէտք է որ մշանջենաւոր պատւոյ մէջ պահուի. Ես ապահով եմ թէ խոհական ոչ մէկ անձ կրնայ ուսումնասիրել մարդկային մարմնի այս խնդիրը, առանց խորհելու թէ վերարտադրող դրութիւնը սուրբ սրբոցն է, որուն մէջ Աստուած ի մեզ կը բնակի, վերարտադրող զօրութեան հրաշալի խորհուրդին մէջ։

Գիշեր բարի ըսելէ առաջ կ'ուզեմ յիշեցնել քեզի թէ մարմինը ոչ միայն կը պղծուի ձեռքերով, այլ միտքը, երեւակայութիւնը և սիրտն ալ կրնան պղծուիլ աչքերու միջոցաւ, երբ անմաքուր բաներու և լկրշ պատկերներու վրայ կը նայինք։ Կրնանք նոյն դէշ արդիւնքին հասնիլ ականջով ալ՝ երբ մտիկ կ'ընենք անառակ պատմութիւններ, դէշ խօսքեր և չար թելադրութիւններ։ Աչքը և ականջը այն դուռներն են որոնցմէ մեր միտքին ու սիրտին մէջ կրնանք մտնել, ուստի պէտք է որ անոնց մեծ խնամք տանինք։ Ասոնք այն ծառուղիներն են, որոնցմէ դէշ ազդեցութիւններ անցնելով՝ մեր մարմնոյն նուիրական տաճարին մէջ կը մտնեն և մենք միտք բերելու ենք ինչ որ առաջին Կորնթացւոց Գ. գլխուն տասնըութերորդ համարին մէջ ըսուած է. «Թէ որ մէկը Աստուծոյ տաճարը կ'ապականէ, Աստուած անիկա պիտի ապականէ»։ Ապահով եմ թէ դուն չես

*փափաքիր Աստուծոյ ներկայութենէն վտարուիլ, և ասոր համար պէտք է յիշես նաև ինչ որ ուրիշ տեղ մը ըսուած է. «Երանի՜ անոնց, որ սրտով մաքուր են, ինչու որ անոնք պիտի տեսնեն զԱստուած»։*

*Վաղը իրիկուն պիտի ըսեմ քեզի թէ ո՞րոնք են այն հետեւանքները, որոնց դեռատի մանչեր կ'ենթարկուին չարաչար կերպով գործածելով իրենց վերարտադրող գործարանները։*

# ԵՐՐՈՐԴ ՄԱՍ

## Վերարտադրող գործարաններու չարաչար գործածութիւնը ի՞նչ հետեւանքներ կ'ունենայ մանչերու համար

*փափաքիր Աստուծոյ ներկայութենէն վտարուիլ, և ատոր համար պէտք է յիշես նաև ինչ որ ուրիշ տեղ մը ըսուած է. «Երանի՜ անոնց, որ սրտով մաքուր են, ինչու որ անոնք պիտի տեսնեն զԱստուած»։*

*Վաղը իրիկուն պիտի ըսեմ քեզի թէ ո՞րոնք են այն հետեւանքները, որոնց դեռատի մանչեր կ՚ենթարկուին չարաչար կերպով գործածելով իրենց վերարտադրող գործարանները։*

# ԵՐՐՈՐԴ ՄԱՍ

## Վերարտադրող գործարաններու չարաչար գործածութիւնը ի՞նչ հետեւանքներ կ'ունենայ մանչերու համար

# ՏԱՍՆԸՄԷԿԵՐՈՐԴ ՁԱՅՆԱԹԻԹԵՂ

*Սեռային մեղանչումի մասին տարբեր անուններու ծագումը. — Մեղանչումին բնոյթը. — Տղոց այն դասակարգը որ մեծագոյն վտանգին մէջ է. — Անհրաժեշտ է որ տղաք լուսաբանուած ըլլան. — Կարեւոր ապահովութիւնը. — Բարոյականը առաջինն է որ կը տուժէ. — Մոլութիւնը, սրտին մէջ Աստուծոյ դէմ ապստամբութիւն յառաջ կը բերէ. — Մոլի մարդիկ ամենէն աւելի հաւանական է որ տարակուսին Աստուծոյ մասին եւ հաւատարիմ չի մնան անոր. — Անհաւատութիւնը. — Անհաւատարմութիւնը ախտանիշներն են սեռային եւ այլ մեղանչումներու:*

**Սիրելի բարեկամս Հրանտ,**

*Ոչ մէկ տղայ կրնայ իր վերարտադրող գործարաններուն դուրսը եղած մասերուն հետ խաղալ առանց ի վերջոյ անոր ամենածանր հետեւանքներէն նեղուելու։ Սկիզբները կրնայ ըլլալ որ այդ բանը՝ տղու մը շատ կարեւոր բան մը չի թուի, սակայն նոյն իսկ առջի վայրկեանին իր խղճմտանքը պիտի ըսէ իրեն թէ շատ սխալ բան մը կը գործէ։ Ասոր համար է որ տղայ մը երբ ինքզինքը այսպիսի գէշ փորձութեան մը կուտայ, կը փնտռէ գաղտնի ու միայնակ տեղ մը, ու ասո՛ր համար է որ այդ մոլութիւնն ալ կը կոչուի «առանձնութեան մոլութիւն»։ Մէկու մը ամբողջ էութիւնը որ այս տեսակ մոլութեան մէջ կ'իյնայ, կը ստորնանայ եւ կը պղծուի իր իսկ անձին տարրքովը. ասոր համար կը կոչուի նաեւ «ինքնապղծութիւն»։ Օնանականութիւն կը կոչուի նաեւ անիկա, ասկէ մօտաւորապէս չորս հազար տարիէ չափ առաջ գործուած նմանօրինակ մեղքի մը համար, որուն պատճառաւ Աստուած մահով պատժեց Օնանը։ Այս մոլութիւնը կը ճանչցուի նաեւ ուրիշ անունով մըն ալ որ*

կը կոչուի գիջութիւն, և որուն իմաստն է ձեռքով պըղծութիւն կատարել։

Այս բառերէն իւրաքանչիւրը կը բացատրէ այն տգեղ նկարագիրը, զոր այդ մոլութիւնը ունի. բայց բառերը անկարող են բացատրելու այն սոսկալի հետեւանքները, որոնց կ'ենթարկուին ամէն անոնք որոնք կը յամառին այդ մոլութեան մէջ մնալ. Ես չեմ հաւատար, սիրելի բարեկամս Հրանտ, որ դուն այս կործանիչ մոլութեան մէկ զոհը եղած ըլլաս, և ուրախ պիտի ըլլայի հաւատալով թէ դուն երբեք դիպուածով չես սորված զայն կամ մտքէդ չես անցուցած անոր մէջ իյնալ։ Ճանչնալով այն վտանգները, որոնց դուն ալ ենթակայ ես ուրիշ ամէն տղոց պէս, և ընդունելով այն իրողութիւնը թէ մտացի տղաք աւելի դիւրագրգիռ ջղային գործարանաւորութեամբ և աւելի խորունկ զգացողութեամբ չա՛տ աւելի ենթակայ են այս մոլութեան քան թէ այն տղաքը որոնք մտաւորական ստորին վիճակ մը ունին և նուազ զգայուն են, կարեւոր կը համարիմ որ դուն այնքան կատարեալ ու աղէկ կերպով լուսաբանուած ըլլաս այս նիւթին վրայ, ինչպէս ուրիշ որ և է խնդրի մասին։ Այս բանը անհրաժեշտ է անոր համար որ դուն ճանչնալով առաջուընէ բնոյթը և հետեւանքները այսպիսի բանի մը, կարենաս հեռու մնալ այդ չարիքէն, որուն մէջ նոյն իսկ չափահաս մարդիկ մինչեւ քսանըհինգէն երեսուն տարեկան, երբեմն կիյնան իրենց տգիտութեան հետեւանքով։ Այս, ինչպէս և ուրիշ բաներու մէջ առաջուընէ զգուշացուցուած ըլլալը կը նշանակէ առաջուընէ զինուած ըլլալ։ Ամէն դեռատի մանչ այս նիւթի մասին պէտք է որ աղէկ մը լուսաբանուած ըլլայ, որովհետեւ մինչեւ անգամ անոնք, որոնք դուրսէն եկած ազդեցութիւններու ներքեւ, մտածման և կեանքի խոտորումներէ կրնան ապահովաբար հեռու պահուիլ, նոյն իսկ այդպի-

ափներն ալ ենթակայ են այն ներքին ֆիզիքական պայմաններուն, որոնք կրնան տեղական գրգռում և հիւանդութիւն յառաջ բերել և այսպիսի հիւանդագին պատճառ մը կրնայ ըլլալ որ ազատաբար չարունակուի, ու գիջութիւնը կարճ ատենի մէջ անուղղելի սովորութիւն մը դառնայ և հաւանականաբար այնպիսի բուռն թափով մը ի գործ դրուի որ ապուշութիւն և նոյն իսկ մահ ըլլայ հետեւանքը և ասիկա յաճախ շատ կարճ ժամանակի մը մէջ։ Ոչինչ այնքան շուտ կը նպաստէ չարունակութեանը և տարածմանը այս ահաւոր ախտին, որքան ազատութիւնը, և միայն կանուխէն ու մաքրութեամբ այս կարեւոր նիւթին վրայ խորհելով է որ կարելի կ'ըլլայ հասնելիք տղաք և մարդիկ ազատ կացուցուին այն սոսկալի հետեւանքներէն, որոնք բարոյապէս, մտաւորապէս և ֆիզիքապէս ամէն տարի հազարաւոր մանչեր կը փճացնեն։

Ինչպէս արդէն ըսի, առաջին բանը զոր տղայ մը կ'ընէ այս մոլութիւնը ի գործ դնելու համար, առանձնութիւնը փնտռելն է. առաջին վայրկեանէն իր խիղճը կը հակառակի իրեն, որով չի կրնար այդ գէշ արարքը գործել առանց բռնաբարելու իր բարոյական զգացումը։ Իրաւամբ ալ իր բարոյական բնութիւնն է որ ամէնէն առաջ կը տուժէ։ Ասիկա, սիրելի տղաս, կարեւոր իրողութիւն մըն է և եթէ երբեք պատահէր որ դուն զոհը ըլլայիր այս ախտին, պիտի տեսնէիր թէ նոյն իսկ գործուած յանցանքը զգալու առաջին վայրկեանիդ, մէջդ տեսակ մը ընդվզում պիտի գտնէիր Աստուծոյ և քու ծնողքիդ դէմ։ Շուտով պիտի սկսէիր խնդրի նիւթ ընել Աստուծոյ իմաստութիւնը և բարութիւնը։ Աղէկ գիրքեր կարդալու, դպրոց երթալու, եկեղեցի յաճախելու և բոլոր յարգելի ու նուիրական բաներու հաճոյքը մեծապէս պիտի պակսէր քու մէջդ։ Քիչ ատենի մէջ դուն

քու սրտիդ խորը պիտի գտնէիր այնպիսի ըմբոստ զգացում մը, որ զքեզ պիտի առաջնորդէր անհնազանդ, անհամեստ, դիւրագրգիռ բնաւորութեան։ Պիտի սկսէիր կորսնցնել հաւատքդ բոլոր այն բաներու մասին որոնք բարի են, և չարունակելու մէջ ըլլալով քու մոլութիւնդ, քիչ առ քիչ պիտի սկսէիր բոլորովին կերպարանափոխ ըլլալ։ Ուրիշ բառերով, բարոյական բնութիւնը ամէնէն առաջ է որ կը տուժէ սեռային մոլութեան երեսէն, և երբ պատահի որ տղայ մը կամ մարդ մը կասկածներ կամ հեգնութիւն զգայ Աստուծոյ, Աստուածաշունչի մաքրութեան և առաքինութեան դէմ, դուն կրնաս ապահով ըլլալ թէ այս զգացումը յառաջ կուգայ առանձնութեան մէջ կամ ամէնուն առջև գաղտնի կերպով կամ բացէ ի բաց գործուած յանցանքէ մը կամ մոլութենէ մը որ կ'ազդէ բարոյական բնութեան վրայ և կը նուաստացնէ ենթակային միտքը։

Եթէ միայն բարոյական բնութեան վրայ ըլլար այդ մոլութեան ազդեցութիւնը, այն ատեն կարելի պիտի ըլլար որ մտայի ու խոհական տղաք հեռու կեցուցուէին այս ախտէն, բայց անոր ներգործութիւնը թէ մտքին և թէ մարմնին վրայ շատ զօրաւոր է և ատոնց մասին քեզի պիտի խօսիմ վաղը իրիկուն։

# ՏԱՍՆԵՐԿՈՒԵՐՈՐԴ ՋԱՅՆԱԲԻԹԵՂ



*Մանչերու նկարագրին վրայ եղած ազդեցութիւնը. — Բարոյական բնութեան վրայ եղած ներգործութիւնները յետոյ ջղային դրութեան վրայ ալ կը յայտնուին. — Ջղային տագնապը. — Անոր հետեւանքով միտքն ալ կը տուժէ. — Մտքին վրայ անոր տեսանելի ներգործութիւնները. — Անոր կը հետեւին ֆիզիքական ներգործութիւնները. — Այս ներգործութիւններուն բնոյթը բացատրուած. — Իրազեկ բժիշկները կրնան դասել անաչառօրէն. — Սովորութիւնը կը զօրանայ եւ կամքը կը տկարանայ. — Հետեւանքներ հոն ուր սովորութիւնը յամառօրէն կը շարունակուի. — Դարմանումը ծայրայեղ պարագաներու. — Կարեւորութիւնը վաղաժամ հրահանգութեան:*

**Սիրելի բարեկամս Արամ,**

*Եթէ ժամանակ ունենայի սիրով ուզէի ըսել քեզի շատ մը բաներ այն կերպին նկատմամբ, որով մոլութեան ներգործութիւնները կը տեսնուին բարոյական բնութեան վրայ և կ'երեւան մեղանչող տղոց և մարդոց կեանքերուն մէջ։ Բայց պէտք է աճապարեմ։*

*Մանչու մը նկարագրին մէջ մեծ փոփոխութիւններ տեղի կ'ունենան և խելացի, համարձակ, զուարթ և հընազանդ տղան կը դառնայ բարկացոտ, դիւրագրգիռ, և երբ այլեւս չի կրնար ուղղակի կերպով և համարձակութեամբ մարդոց երեսը նայիլ, այն ատեն կը ջանայ խուսափիլ մարդոց հանդիպելէ և աստին անդին կը թափառի յանցապարտ խղճմտանքով մը ու այս պարագային հետզհետէ կը տեսնուին նաեւ մտաւորական և ֆիզիքական փոփոխութիւններ։*

*Բարոյական բնութենէն վերջը ջղային դրութիւնն է որ կը վնասուի. մարդկային մարմնին ուրիշ ոչ մէկ մասին մէջ այնքան մեծ թիւով ջիղեր ի մի հաւաքուած*

են, որքան վերարտադրող դրութեան մէջ։ Գիջութեան պարագային այս ջիղերը այնպիսի եղանակով մը կը գրգռուին որ շատ ծանր հետեւանքներ կրնան յառաջ գալ։ Այն հաճոյալի յուզումը, որով սկսած է ան, կը վերջանայ ջղային ստնգանքի (spasm) մը մէջ։ Այս առթիւ կը դադրի ամէն հաճոյք եւ ջիղերն ալ յոգնած վիճակ մը կ'առնեն՝ նման մարմնին մարդու մը, որուն ֆիզիքական դրութիւնը կը գտնուի ստնգանքի ազդեցութեան ներքեւ։ Դիւրաւ կրնաս հասկնալ թէ ի՛նչպէս վերարտադրող գործարաններու ջիղերուն վրայ այսպիսի բուռն ազդեցութիւններ՝ կը հաղորդուին նաեւ ամբողջ մարմնի ջիղերուն եւ եթէ այդպիսի բուռն ազդեցութիւններ երբ կրկնուին կամ երկար ատեն շարունակուին, ամբողջ ջղային դրութիւնը կրնայ փճանալ, առանց կատարեալ ապաքինման յոյսի։

Երբ մէկ կողմէն ջիղերը կը փճանան, միւս կողմէ միտքն ալ կը վնասուի. այն խելացի տղան որ դասարանին առաջինն էր, հետզհետէ կը կորսնցնէ իր դասերը ըմբռնելու զօրութիւնը, իր յիշողութիւնը կը պակսի, միտքը կը սկսի գործելէ թերանալ եւ ինք ուժով անկարող է բանի մը կպչելու, հետզհետէ իր դիրքը կը կորսնցնէ եւ մինչեւ դասարանին ամէնէն յետին աստիճանը կ'իջնէ։ Կամաց կամաց վատա՛ն կերպով մը կը դադրի դրական եւ ինքզինքին վրայ ապահով ըլլալէ. այլեւս առոյգ խաղերու մէջ իր զգացած հաճոյքները չունի, չունի այն սրտագին ուրախութիւնը եւ զուրկ է այն բարի ընկերականութեան զգացումէն որ կը յատկանշէ ամէն զօրաւոր միտք եւ զօրաւոր մարմին ունեցող տղայ։

Երբ մէկ կողմէ բարոյական եւ մտաւորական փոփոխութիւնները տեղի կ'ունենան, ֆիզիքական ներգործութիւնները ջիղերու վրայ իրենց հետեւանքովը չեն վեր-

ջանար. առողջութիւնը աստիճանաբար կը պակսի, աչքերը կը կորսնցնեն իրենց փայլը, մորթը անգոյն կը դառնայ, մկանները կ'ընդարմանան, անբնական թուլութիւն մը և դանդաղութիւն մը կուգայ վրան, խուրաքանչիւր պզտիկ ջանքի կը յաջորդէ տատամսումը, մեծ անտարբերութիւն մը կ'ունենայ որ և է ջանք մը ընելու, աշխատութիւնը անհամ ու նեղացուցիչ բան մը կ'ըլլայ, ու կը սկսի նեղուիլ կռնակի և գլխու ցաւերէ, և ընդհանուր տկարութենէ: Ձեռքերը կը պաղին և կպչուն կը դառնան, մարսողութիւնը խեղճ բան մը կ'ըլլայ և ախորժակն ալ քմահաճ, սիրտը բաբախումներ կ'ունենայ, կը նստի կորաքամակ դիրքով մը, կուրծքը դէպի ներս կ'երթայ և ամբողջ մարմինը փոխանակ առնական, լայն ու զօրաւոր ձեւ մը առնելու կը տըկարանայ և շատ մը նշաններ կը յայտնեն թէ անկումը և մահը ժամանակէն առաջ անոր պիտի ունենան:

Այս ամէնը, սիրելի բարեկամս Հրանտ, մէկ քանին են տղոց և երիտասարդներու գիջութեան ախտանիշներէն և անոր ներգործութիւններէն, երբ այդ ունակութիւնը յաճախակի կը գործադրուի կամ թէ երկար ատեն գործադրուած է. իրաւ է թէ ցոյց տրուած վիճակներէն մէկ քանին ուրիշ մարմնական հիւանդութեանց մէջ ալ յառաջ կրնան գալ, -- և այս պատճառաւ ճարտար չեղողները ենթակայ են սխալ դատելու, — սակայն իրագեկ բժիշկ մը ամէն ժամանակ կարող պիտի ըլլայ որ և է ներկայացած պարագայի ճիշտ ու ճիշտ դատել թէ որոնք են այդպիսի արդիւնքներ յառաջ բերող պատճառները:

Դուն թերեւս հիմա չես գիտեր կամ ապագային պիտի տեղեկանաս թէ կարգ մը տղաք այս մոլի ունակութեան մէջ են. որովհետեւ դուն չես նշմարեր ամէնէն գլխաւոր հետեւանքները կամ անոնցմէ մէկ քանին զորս անուանեցի, թերեւս խորհիս թէ ես կը սը-

խալիմ կամ թէ եզելութիւնները իրենց եղածէն աւելի գէշ կը ներկայացնեմ։ Ինչ որ ես նկարագրեցի շատ մը պարագաներու մէջ նոյն իսկ անմիջապէս չանցնիր։ Շատ մը պարագաներու մէջ այս հետեւանքները թերեւս կամաց կամաց կուգան, բայց ապահով կերպով այն բոլոր պարագաներուն մէջ ուր այս գէշ ունակութիւնը յամառութեամբ կը շարունակուի և ես անձամբ օրինակներ գիտեմ ուր այդ դէշ հետեւանքները արագաբար կուգան և տակաւին տղայ հասակի մէջ եղողները անգամ բոլորովին կը փճացնեն։

Այն ծանր դժուարութիւնը, ամէն անոնց համար որոնք ենթակայ են այս սոսկալի և կործանարար մոլութեան, սա է որ երբ մարմինը, միտքը և բարոյական նկարագիրը կը տկարանան, ունակութիւնը հետզհետէ աւելի կը զօրանայ, և կամքը ինքնին կրնայ այնքան տկարանալ որ երբ նոյն իսկ իրեն պատմուին այդ մոլութեան աւերիչ բնութիւնը և անոր ահուր հետեւանքները, երբեք փափաքը չունենար վերջ մը դնելու իր ունակութեան, ոչ ալ իրապէս կը ցանկայ խուսափիլ անոր սոսկալի հետեւանքներէն, որոնք ապահովապէս յառաջիկային պիտի գան։

Բոլոր ըսածներէս պիտի տեսնես թէ այս գաղտնի մոլութիւնը կը վերջանայ խիստ ծանր հետեւանքներով. բայց ես տակաւին ամէնէն գէշը չըսի քեզի, եթէ շարունակուի, գիջութիւնը ոչ միայն առողջութեան հիմերը կը խախտէ այլ բոլորովին կը կործանէ զանիկա։ Եթէ մարմինը բնականէն զօրաւոր է, կրնայ ըլլալ որ առաջին անգամ միտքը ենթարկուի անոր ազդեցութիւններուն և ծայրայեղ պարագաներու ապուշութիւնը և յիմարութիւնը անխուսափելի հետեւանքներ կ'ըլլան։ Իսկ այն պարագային ուր մարմինը բնականէն զօրաւոր չէ, ընդհանուր տկարութիւն մը վրայ կը հասնի կամ

թէ կեանքը վերջ կը գտնէ մէկ կամ մէկէ աւելի հիւանդութիւններու հետեւանքով։

Սոսկալի և անօգնական վիճակը այնպիսիներու, որոնց մէջ այս ունակութիւնը տեւականօրէն բոյն դրած է, դուն կարող ես դատել այն իրողութենէն թէ, գիջութեան արարքին կրկնութիւնը արգիլելու և, եթէ կարելի է, տեւականօրէն զոհը այս ախտէն փրկելու համար, տղաք յաճախ կը դրուին «բունի-շապիկներու» մէջ, յաճախ իրենց ձեռքերը կը կապուին իրենց կըռնակին վրայ, երբեմն անկողինին եզերքներուն կամ թէ չուաններով և շղթաներով պատին վրայ եղած օղակներու. և շատ մը ուրիշ կերպերով ծայրայեղ միջոցներ ձեռք կառնուին, ջանալով փրկել ենթական մտաւոր և ֆիզիքական ամբողջական փճացումէ, և կը ցաւիմ ըսելու թէ, նոյն իսկ այս ծայրայեղ միջոցները երբեմն չեն յաջողիր այդպիսի զոհեր բուժելու։

Կարծեմ պիտի համոզուիս սիրելի տղաս թէ որքան կարեւոր է որ բոլոր տղաք պէտք եղած կերպով և յարմար ժամանակին զգուշացուցուին այս սարսափելի մոլութեան հետեւանքներէն։ Դուն կ'ըմբռնես թէ քու սիրելի հայրդ ինչու խնդրեց ինէ որ շարունակեմ քեզ նոր Ձայնաթիթեղներ ղրկել, քու մօրդ ըրած հարցումիդ պատասխանելէս յետոյ։ Քու ծնողքդ շատ խելացի է և զքեզ շատ կը սիրէ, հետեւապէս չի կրնար անտարբեր մնալ այս լուրջ խնդիրներուն կարեւորութեան հանդէպ։ Քու ծնողքդ չուզեր որ տգիտութեան երեսէն դուն ալ ենթարկուած ըլլաս այդ սոսկալի վտանգներուն. և որովհետեւ դուն ճանչցար այն տխուր հետեւանքները, որոնց մէջ կ'իյնան նախապէս մաքուր միտք և առողջ մարմին ունեցող տղաքը, պարզապէս տգիտութեան հետեւանքով, պէտք է շնորհակալ ըլլաս Աստուծոյ որ քու ծնողքդ զքեզ խելացի կերպով կը սիրէ և երախ-

տապարտ զգաս ինքզինքդ նաև Նախախնամութեան հանդէպ որ զքեզ ազատ պահեց այս կործանարար մոլութենէն ։

Ճանչնալով թէ քու ծնողքդ այս մասին ինչ բան փափաքեցան քեզի համար, շատ յարմար պիտի ըլլայ որ վաղը իրիկուն բացատրեմ քեզի թէ ինչ անարդարութիւն պիտի ըլլար ծնողքիդ և ուրիշներու՝ եթէ երբեք դուն իյնայիր սեռային մոլութեան մէջ, այս կամ որ և է ուրիշ ձևի մը ներքև ։

# ՏԱՍՆԵՐԵՔԵՐՈՐԴ ՁԱՅՆԱԹԻԹԵՂ



*Այն մանչը որ առանձնական մոլութեան կը հետեւի, միայն ինքը չի տուժեր. — Տղոց մեղքերը իրենց ծնողքներէն եկած. — Ծնողքներ յաճախ ամենէն աւելի կը տառապին անոնցմէ. — Ծնողք ինչեր կ'ընեն իրենց տղոց համար, երախայութեան ատեն, մանկութեան միջոցին. — Պէտք չէ զիրենք յուսախաբ ընել. — Եղբայրներ եւ քոյրեր տառապելու համար եկած են — Իր տղաքը իրմէ վերջ պիտի տառապին իր մեղքին հետեւանքներէն. — Մենք կը վերարտադրենք մեր նմանները — Չենք կրնար փոխանցել ինչ որ մենք չունինք — Ինչ որ մենք ենք այսօր, նոյնը պիտի ըլլան վաղը մեր տղաքը. — Այսօրուան մանչերու եւ աղջիկներու նկարագիրը ցոյց կուտայ ազգի մը մէկ հարիւր տարի ետքը ունենալիք նկարագիրը:*

**Սիրելի բարեկամս Հրանդ,**

Բոլոր այն բաներէն զորս երէկ ու առջի գիշերները ըսի քեզի, հարկաւ գաղափար կազմեցիր թէ որո՞նք են առանձնութեան մէջ մոլութեան տխուր հետեւանքները. աւելին կայ, միայն տղան չէ որ կ'ենթարկուի այդ գէշ հետեւանքներուն. ոչ մէկը կրնայ որ և է սխալ մը գոր-ծել, առանց արգիլելու որ ուրիշներ ալ չի կրեն անոր հետեւանքները, գոնէ պզտիկ չափով մը: Ոչ միայն ծնողաց գործած յանցանքներուն հետեւանքները կը տես-նուին տղոց վրայ, այլ տղոց յանցանքներուն հետեւանքն ալ ծնողաց վրայ:

Եթէ դուն քու արարքովդ առողջութիւնդ խան-գարէիր, միտքդ տկարացնէիր և ինքզինքդ անօգուտ վիճակի մը մէջ դնէիր, խնդիր է գիտնալ թէ քու ծը-նողքդ այնքան և նոյն իսկ աւելի չի՞ պիտի տառապի՛ն ատկէ որքան դուն: Վայրկեան մը միտքդ բեր թէ ի՜նչ բաներ ըրած է քու ծնողքդ քեզի համար: Մայրդ

իր կեանքը վտանգի դնելով քեզ աշխարհ բերելէն վերջը, բան մը որ իրեն շատ ցաւ և տառապանք պատճառած է, ամբողջ ամիսներ ինքզինքը բոլորովին նուիրած է զքեզ սնուցանելու և խնամելու. Երբ մանկութեան կապուած կարգ մը հիւանդութիւններ վրայ հասած են, անիկա պահած ու պահպանած է զքեզ, առանց որուն դուն պաղ առած և մեռած պիտի ըլլայիր կամ տեսողութիւնդ և լսողութիւնդ կորսնցուցած և կամ թէ ուրիշ որ և է եղանակով մը ֆիզիքական պակասութեան մը ներսէն կեանքիդ միւս մասին մէջ անպատճառ պիտի տառապէիր: Հայր և մայր ինքզինքնին քեզի նուիրեցին գրեթէ միշտ, ցերեկ և գիշեր հսկելին վրադ, և ամբողջ ամիսներ, վախնալով որ սոսկալի հիւանդութենէ մը չի բռնուիս, կամ զայն ուրիշներու չի փոխանցես, ոչ մէկը գնաց նկաւ և քու օդափիդ համար՝ անոնք ուրախութեամբ հսկեցին և ամէն նեղութեան դէմ դրին առանց գանգատելու:

Դու ծնելէդ ի վեր հայրդ և մայրդ աշխատեցան քեզի ամէն դիւրութիւն և հանգստութիւն տալու հոգ տարին քու զարգացմանդ և դաստիարակութեանդ, հեռու պահեցին զքեզ չար ընկերներէ և ամէն տեսակ վտանգաւոր ազդեցութիւններէ, և ես ապահով եմ թէ դուն արդէն պիտի տեսնես թէ ինչ յուսախաբութիւն և ցաւ պիտի ըլլար քու ծնողացդ համար, եթէ դուն սխալ մը գործէիր, ինչպիսի ցաւ մը պիտի ըլլար քու հօրդ և մօրդ եթէ անոնք իրենց տղան տեսնէին տժգոյն դէմքով, մարած աչքով, կքած մարմնով, առանց կորովի, ուժի և նպատակի, յետադէմ մը դպրոցին մէջ, ուրիշներու ընկերութենէն խրտչող, որ հաճոյք չզգար աղէկ գիրքերէն, կը խուսափի ևկեղեցի երթալէ: Ապահով եմ թէ ոչինչ աւելի մեծ ցաւ պիտի ըլլար հօր մը կամ մօր մը՝ քայց եթէ գիտնալը թէ իրենց

սիրելի տղան, զոր անոնք կը յուսային մեծ օգտակարութեան մը համար պատրաստել, խոտորած է մեղքի ու գիջութեան ճամբաներու մէջ, և ապահովաբար ի դերեւ կ'ելլեն իրենց բոլոր յոյսերը և կը փճանայ իրենց տղան թէ՛ այս աշխարհիս և թէ՛ հանդերձեալ կեանքին համար։

Ոչ միայն ծնողքը, այլ պզտիկ եղբայր քոյրն ալ մեծնալով կին ըլլալուն որքան ցաւ պիտի զգայ, երբ ճիշդ այն միջոցին, ուր պէտք էր որ հպարտութեամբ քեզի դիմէր, խորհուրդ, համակրութիւն և օգնութիւն սպասելով, պիտի շուարի մնայ զքեզ գտնելով տկար, ջղային և անարժան այն յարգանքին ու սիրոյն զորս անիկա այլապէս սիրով պիտի տածէր քեզի համար։ Դուն ո՛չ միայն անիրաւութիւն մը պիտի ընէիր քու քրոջդ, այլ նաև անիրաւութիւն մը այն մաքուր, քաղցր աղջկան, որ աստուածային նախախնամութեան կարգադրութեամբ կը պատրաստուի պսակելու և ուրախացնելու քու այրութիւնդ և որուն հետ դուն չես կըրնար սպասել որ երջանիկ ըլլաս, և յարգուիս անկէ, բայց եթէ այն պարագային երբ քու կեանքդ ալ նոյն մաքրութեամբ և պատուով զարդարած ես, ա՛յն յատկութիւններով, զորս դուն իրաւունք ունիս սպասել անկից։

Բայց այն հետեւանքները, որոնք գիջութենէն յառաջ կուգան, միայն այն մոլութեան ենթակայ տղան, իր ծնողքը, եղբայրները և քոյրերը, բարեկամները և ազգականները չէ որ իրենց ազդեցութեան տակ կ'առնեն, այլ ուր որ գիջացող տղայ մը կ'ապրի, կատարեալ մարդ ըլլալուն, եթէ ամուսնանայ և հայր ըլլայ, իր տղաքն ալ իրմէ վերջը, մինչև աստիճան մը, կը կրեն իր մեղքին հետեւանքները։ Եթէ իր կեանքը անկարող դարձուցած են զինքը երջանկութեան և իր տղաքը այս

պատճառաւ խեղճութեան մէջ ծնած են, սակայն մէկը պիտի ըլլայ այն հետեւանքներէն, որոնց երեսէն անոնք կը տուժեն, բայց եթէ իր ֆիզիքական ուժերը մոլութեան հետեւանօք կամ ուրիշ պատճառներով տկարացած են, չի կրնար կատարել և այնքան աղէկ ֆիզիքական, մտաւորական և բարոյական ուժեր փոխանցել իր տղոց, որքան կարող պիտի ըլլար եթէ աւելի նպաստաւոր պայմաններու մէջ գտնուէր ինքը։ Որովհետեւ մարդ մը ո՛չ ֆիզիքապէս և ո՛չ ալ նիւթապէս իր տղոցը կրնայ փոխանցել կամ տալ այն բանը զոր ինք չունի։ Ինչպէս ցորենի հատիկին, նոյնն է մարդկային կեանքի մէջ։ Եթէ դաշտին մէջ ցանուած ցորենի հատիկին որակը խեղճ է, անկէ բուսած ցորենն ալ ստորին տեսակէ պիտի ըլլայ։ Երբ տղայ մը իր վերարտադրող ուժերուն վնասէ, չափահասութեան տարիքին հասնելուն, սեռային կարողութիւնները ստորին աստիճանի մը պիտի պատկանին. և իր·մէ յառաջ եկած զաւակներն ալ իրենց ֆիզիքական, բարոյական և մտաւորական բնութեան մէջ նոյն բանը պիտի ցոյց տան։ Ուրեմն կը տեսնես թէ նոյն իսկ դեռատի մանչ մը, կարող է, ապագայի մէջ ունենալիք տղոց վիճակը նախապատրաստել, ա՛յն մոլութեանց և մեղքերու հետեւանքներուն համեմատութեամբ, զորս ինքը, անոնց ծնելէն երկար տարիներ առաջ գործած է։ Այս կէտը ա·պահովապէս շատ խորհիլ տալու կէտ մըն է, և դուն կարող ես տեսնել թէ ի՛նչպէս նոյն իսկ այսօրուան պզտիկ տղաքը անգիտակցաբար ո՛չ միայն կը պատրաստեն ու կը ձեւեն նկարագիրը և ճակատագիրը իրենցմէ վերջը գալիք տղոց, այլ նաև կը ձեւեն պատմութիւնը և ճակատագիրը ամբողջ ազգին։ Մտածումը և վարմունքը, ներշնչումները և յաճախութիւնները մանկապարտէզներու և նախակրթարաններու մէջ գտնուող տղոց և աղջկանց, այսօր կը մշակեն ու կը զարգացնեն

անոնց մէջ այն կեանքը և նկարագիրը, որոնք պիտի որոշեն թէ որո՞նք պիտի ըլլան ազգին գլխաւոր յառաջադիմիչները յառաջիկայ հարիւր տարուան ընթացքին։

Կը փափաքէի որ երկրին մէջ գտնուող ամէն տղայ գիտնար այս եղելութիւնները, որպէս զի կարող ըլլար խելացի կերպով իր առողջութիւնը խնամել և օր մը իր տղաքը օժտել կորովի մարմիններով, կարենար այնպէս մը իր միտքը մարզել որ իր տղաքը կարող ըլլային իրմէն ընդունակութիւն մը ժառանգել գիտութիւններ սորվելու համար. նաև հնազանդէր բարոյականութեան օրէնքներուն, որպէս զի իր տղաքը կարենային իրմէ ժառանգել սէր մը առաքինութեան, ճշմարտասիրութեան և կրօնքի համար։

Արդ, կը տեսնես թէ ո՛րքան կարևոր է որպէս զի տեղի չունենայ բան մը որ կրնար տկարացնել որ և է մէկը այն կարողութիւններէն և ուժերէն զորս Աստուած քեզի տուաւ և վաղը իրիկուն պիտի փորձեմ ըսել քեզի հակիրճ կերպով թէ ի՞նչպէս տղաք կարող են իրենց մարմինը մաքուր և ուժով պահել։

# ՏԱՍՆԸՉՈՐՍԵՐՈՐԴ ՁԱՅՆԱԹԻԹԵՂ



*Մաքրութիւնը եւ ուժը ի՞նչպէս կրնան պահպանուիլ. – Մեր ձեռքը պզտիկ է՝ ամեն բան պէտք եղածին պէս ընելու համար. — Այն խնդիրները, որոնց պէտք է հետեւիլ ուրիշ գիրքերու մէջ.—Մաքրութիւնը Աստուածային յատկութենէն վերջը կուգայ. –Մաքրութիւն մտքին եւ մարմնոյն. — Մաքուր սիրտ մը՝ առաջին պէտք եղածը.—Ուտելու հսկողութիւնը.—Աղտոտ գիրքերու վնասը. — Մարմնոյն մաքրութիւնը. – Շաբաթական եւ առօրեայ լոգանք. —Թրիասուելու սովորութեան առնչութիւնը մաքրութեան հետ —Մարմնոյն ոչ միայն արտաքին այլ նաեւ ներքին մասերն ալ պէտք է մաքուր պահել. — Աւելորդ հեղուկ եւ կարծր մասերու մեր մարմնէն դուրս արտաքսումը. Այն դասը զոր կրնանք սորվիլ հնոցին եւ վառարանին մէջ վառող կրակէն.—Կրակը կամ արիւնը մեր մարմիններուն մէջ. — Մուխ եւ արտաշնչութիւն. —Մոխիր եւ մարմնի մէջ եղած աւելորդ մասեր. — Կարեւորութիւնը մարմնի մէջ եղած աւելորդ մասերուն կանոնաւոր կերպով պարպուելուն:*

**Սիրելի բարեկամս Հրանդ,**

*Խոստացայ այս իրիկուն ըսելու քեզի՝ թէ ի՛նչպէս տղաք կրնան իրենց ամբողջ մարմինը անաղարտ և զօրաւոր պահել։ Խօսքս ուղղելով անանկ տղու մը, որ այնքան խելացի և ուղղախոհ ծնողք մը ունի, ինչպէս քու հայրդ և մայրդ, չեմ կարծեր թէ ամէն ինչ կամ նոյն իսկ ըսելիքներէս շատերը բոլորովին նոր պիտի ըլլան քեզի համար։ Այսու հանդերձ կը յուսամ որ կրկնելով պիտի կարենամ տպաւորել մտքիդ մէջ, ինչ որ քու ծնողքդ ասկէ առաջ ըսած է քեզի։ Այս մասին ըսելու համար քեզ ամէն փափաքելի բան, պէտք պիտի ըլլար մէկ քանի շաբաթներ ամէն իրիկուն նոյն խնդրին վրայ խօսիլ, մինչդեռ մենք երեք կամ չորս իրիկուն կրնանք տալ, և կը յուսամ թէ դուն յառաջիկային*

պիտի չարունակես այդ մասին նորանոր ծանօթութիւններ ստանալ, մէկ քանի արժէքաւոր գիրքեր կարդալով (*)։ Ամէն պարագայի, պիտի փորձեմ ամէնէն կարճ ժամանակի մէջ, ամէնէն պարզ կերպով ամէնէն շատ ծանօթութիւնները տալ։ Անշուշտ յաճախ լսած ես սա խօսքը թէ «Մաքրութիւնը Աստուածային յատկութենէն վերջը կուգայ»․ Ճշմարիտ մաքրութիւնը իր մէջ կ՚առնէ թէ՛ մարմնի և թէ՛ մտքի անբծութիւնը. եթէ թոյլ տրուի որ անհամեստ և անմաքուր մտածումներ մտքին մէջ հետզհետէ տեղ ունենան, անոնք քիչ ատենէն կեանքի մէջ ալ իրենց դերը կը խաղան։ Աստուածաշունչը խօսելով մարդուն վրայ կ՚ըսէ. «Ինչպէս անիկա իր սրտին մէջ կը խորհի, այնպէս է»։ Մտածումը քիչ ատենէն կեանք ու նկարագիր կը դառնայ, ուրեմն կը տեսնես թէ ո՛րքան կարեւոր է մեր միտքը և մեր մտածումը մաքուր պահելը։

Որպէս զի դուն կարենաս պէտք եղած կերպով սիրտդ մաքուր պահել, հարկ է որ մեծ զգուշութեամբ հեռու մնաս այն գիրքերէն որոնք անպարկեշտ կամ անմաքուր են։ Շատ, խի՛ստ շատ գիրքեր, գէշ կամ անմաքուր նկարագիր մը ունին։ Երբէք մի՛ կարդար, ձեռքդ մի առներ գիրք մը կամ մի՛ ունկնդրեր այնպիսի գիրքի մը ընթերցանութեան՝ զոր չպիտի կրնայիր մօրդ և հօրդ ներկայութեան բարձրաձայն կարդալ։ Այս բոլոր խնդիրներուն մէջ, քու ծնողքդ քեզի խորհրդատու և պաշտպան ըրէ, ուժգնաքով հեռացիր ամէն անոնցմէ որոնք կ՚ուզեն միտքդ պղծել իրենց տգեղ պատմութիւններով կամ անպարկեշտ խօսակցութեամբ. քեզի ընկեր ընտրէ միայն ան որ մաքուր և բարի է, եթէ այդ տեսակ ընկեր մը չի գտնես՝ շատ աւելի աղէկ է որ ա-

(*) ՄԵՐ ՄԱՐՄՆՈՅՆ ՀՐԱՇԱԼԻՔՆԵՐԸ, հեղինակ՝ բժշկուհի Տկն. Ուրս Ալէն, հրատարակելի 1909ին։ Ծ. Թ.

ռանձին մաս. աւելի դիւրին է դէշ ընկերոջ մը քեզ դէպ ի վար իրեն քաշելը քան քու կարող ըլլալդ՝ զայն դէպ ի քեզ բարձրացնելու։

Ոչ միայն միտքը, այլ մարմինն ալ պէտք է անեղծ ու մաքուր պահել։ Ամէն անձ պէտք է որ գոնէ շաբաթը անգամ մը ամբողջ մարմինը մաքրէ, շաբաթը երկու անգամը աւելի աղէկ է. տղայ եղած ատենս ամէն առտու հագուելէ առաջ պաղ ջուրով կը լուացուէի, ասիկա քիչ ատենէն հաստատ սովորութիւն մը դարձաւ և մինչեւ այսօր կը շարունակուի, ինծի համար ֆիզիքական մեծ օգուտներով։ Եթէ նոյն բանը ամառը սկսուի, բնաւ վտանգ չկայ պաղ առնելու, և երբ պաղ ջուրն ու ձմեռուան օդը գան՝ այն ատեն լոգանքէն անմիջապէս վերջ մարմինը պէտք եղած միջոցներով տաք կը պահուի։ Ձեռքերը պէտք է գործածուին կարծր անձեռոցով մը ամբողջ մարմինը աղէկ մը շփելու։

Սեռային գործարանի մաքրութիւնը ապահովելու համար ու այսպէսով ամէնէն աւելի ամբծութիւնը հաստատ պահելու և իր ընտրեալ մարդոց մէջ առաքինութիւնը զօրացնելու համար, Աստուած հաստատած է թլփատութեան ծէսը, որ կը կատարուէր երբ մանչ տղան ութը օրուան կ'ըլլար։ Այս ծէսը կը կայանար սեռային անդամին ծայրը գոցուած թոյլ մորթը դէպի առաջ քաշելով կտրելուն մէջ։ Այս կերպով նախ ծնողաց համար ու յետոյ տղուն համար աւելի կը դիւրանար սեռային անդամին ծայրը ազատ պահել այն աճառային նիւթէն որ այնքան դիւրաւ յառաջամասի մորթին տակը կը հաւաքուի և որ եթէ չմաքրուի մէկ քանի օրէն բորբոքում մը յառաջ կը բերէ և տղան դիւրաւ ենթակայ կը դառնէ սեռային գրգռման և դիջութեան։ Երբ ամէն շաբաթ կանոնաւոր կերպով լոգանք ընես, միշտ աղէկ է որ յառաջամասի մորթը կամաց մը ետ

առնես և խնամով մաքրես սեռային անդամի այդ մասը. մաքրելու այս գործողութիւնը պէտք է որ կատարուի գիտակցութեամբ և մաքուր ոգւով, զգուշանալով ո և է արարքէ որ կրնայ միտքը պղծել, կամ մարմինը ապականել:

Ո՛չ միայն մարմնոյն արտաքինը, այլ և ներքինը պէտք է որ ամբիծ պահուի մաքրութեան միջոցաւ. աղտոտութեանց մեծ մասը, որ լուացուելով մարմնոյն արտաքին մասէն կը հեռացուի, կը բաղկանայ այն հեղուկ և հաստատուն նիւթերէն, որոնք մորթին ծակտիկներէն դուրս կ'ելլին, ընդհանրապէս քրտինքի ձեւին տակ: Յաճախակի լոգանքը անհրաժեշտ է մորթին ծակտիկները բաց պահելու և ասով մարմինը կատարեալ առողջութեան մէջ դնելու համար: Բայց աւելորդ նիւթերու մեծ քանակութիւն մը թէ՛ հեղուկ և թէ՛ հաստատուն մարմիններու ձեւին ներքեւ, դուրս կը վանուի նաև մարմնէն, մէկ անգամէն և բաւական մեծ քանակութեամբ:

Ինչպէս կ'ըլլայ որ այս աւելորդ նիւթերը մեր մարմնոյն մէջ կը գոյանան. Թերեւս լաւագոյն կերպով հասկնաս այս բանը, դիտելով կրակը որ վառարանին մէջ կը վառի: Փայտին կամ ածուխին վառիլը յառաջ կը բերէ տաքութիւն և եթէ ուզուի որ վառած մնայ պէտք է որ երբեմն երբեմն անոր վրայ վառելու նոր նիւթ աւելցնենք: Որքան վառելանիւթերը այրին այնքան մոխիրը կը դիզուի: Վառելանիւթի պզտիկ քանակութիւն մըն ալ, ծխնելոյզին մէջէն կ'անցնի ծուխի ձեւին տակ և այն որ իբր մոխիր կը մնայ պէտք է հեռացուի վառարանին մէջէն, հակառակ պարագային վառարանը կը թխմուի, չի քաշեր և կրակը կը մարի: Նոյն բանը կարելի է ըսել նաև մեր մարմնոյն համար: Մեր մարմնոյն տաքութիւնը յառաջ կուգայ թոքերուն,

լեարդին և մկաններուն մէջ կատարուած փոփոխութիւններէն, որոնք շատ մը տեսակէտներով մեծապէս կը նմանին վառարանին մէջ վառելանիւթի այրելուն։ Այն մասը որ ծակոտիկներէն քրտինքով դուրս կ'ելլէ, կը նմանի մոխիրին այն մասին որ ծուխի ձևին ներքև ծխնելոյզէն դուրս կ'ելլէ, և այն մասը որ իբր հեղուկ կամ հաստատուն մարմին կը հաւաքուի մեր մարմնոյն կարգ մը մասերուն մէջ, զորս Աստուած ստեղծած է անոր համար, կը համապատասխանէ այն մոխիրին՝ որ կը հաւաքուի վառարանին տակ գտնուած մոխրամանին մէջ։ Արդ, ինչպէս որ եթէ մոխրամանը ամէն օր չի պարպուի, մոխիրը մինչև բերանը կը լեցուի և օդառութեան ծակերը կը գոցէ ու կրակը կը մարի, նոյն կերպով եթէ կանոնաւորապէս ատենը անգամ մը միզափամփուշտը և աղիքները չի պարպուին, մարմնոյն ամբողջ ներքին մասը կանգ կ'առնէ գործելէ, մարմնոյն բոլոր պաշտօնները կ'արգիլուին և այդ վնասակար նիւթերը կը մնան արեան մէջ, ուղեղը և մարմնոյն բոլոր մասերը կը բթանան և կը ծանրանան և եթէ այս վիճակը երկար ատեն շարունակուի կամ կրկնուի, հետևանքը ապահովաբար հիւանդութիւն մը կ'ըլլայ։

Եթէ դուն կը փափաքիս զօրաւոր ու առողջ ըլլալ, կանոնաւոր կերպով պարպէ մարմնոյդ ներսը գտնուած աւելորդ նիւթերը։ Աւելորդ հեղուկը պէտք է որ միշտ ամբողջովին պարպուի, գիշերը անկողին երթալէ անմիջապէս առաջ, առաւօտուն անկողնէ ելլելէ անմիջապէս վերջը և երեքէն մինչև վեց ժամ միջոցով ամբողջ օրուան տևողութեանը։ Աւելորդ հաստատուն մարմինը պէտք է մարմնէն հեռացնել անթերի կանոնաւորութեամբ ամէն օր. մաքուր ու հոգատար մարդոց ամենամեծ մասը գիտէ թէ ամէնէն աղէկ է այդ

պարտականութիւնը նախաճաշէն անմիջապէս վերջ կատարելը։ Եթէ այս կրկնակ պարտականութիւնները կատարելու մէջ հոգ ու կանոնաւորութիւն չդնենք, բոլորովին անկարելի է որ առողջ ըլլանք, զօրաւոր մարմին մը ունենանք և մաքուր միտք մը։ Որպէս զի տան մը բնակիչները հանգիստ ու երջանիկ ըլլան, բաւական չէ միայն տան դուրսի կողմը աղէկ մը ներկած ըլլալը. տան ներքինն ալ պէտք է որ մաքուր ու ամբիծ ըլլայ. առողջ ու երջանիկ ըլլալու համար մարմինդ մաքուր ու անբիծ պահէ թէ՛ դուրսէն և թէ՛ ներսէն։

# ՏԱՍՆԸԶԻՆԳԵՐՈՐԴ ՁԱՅՆԱԹԻԹԵՂ

*Դանդաղ օգսիտացում որ կը կոչուի ժանգոտում. — Արագ՝ որ կը կոչուի այրում.—Մեր մարմնին մէջ եղած կրակին համար լաւագոյն վառելանիւթը. —Ընտրութիւն եւ պատրաստութիւն սնունդի.—Գտի՛ր թէ ո՛ր սնունդները քեզի չեն յարմարիր.—Անսովոր ախորժակներ. — Ի՞նչ պէտք է խմել. — Բոլոր գրգռիչ սնունդներու վնասը.—Ոգելից ըմպելիներու պատճառած վնասը.—Վնասաւոր սիկառէթը. — Ծխախոտը տիեզերապէս եւ չրչօրէն վնասակար դեռատի մանչերու համար.—Անոր ներգործութիւնը ուղեղին, մարմնին եւ վերարտադրող գործարաններուն վրայ:*

**Սիրելի բարեկամս Հրանտ,**

Երէկ իրիկուն խօսեցայ քեզի տաքութեան և այն փոփոխութեանց վրայ որոնք մեր մարմնոյն մէջ կը կատարուին և զանոնք շատ մը տեսակէտներով, նմանցուցի վառարանին մէջ վառող կրակին։ Նմանութիւնը պատկեր մը ըլլալէ աւելի իրողութիւն է. մեր մարմնոյն մէջ այրումը կամ օքսիտացումը դանդաղ է, սակայն չի դադրիր իրողութիւն ըլլալէ, ինչպէս օքսիտացումը այն երկաթին, որ բաց օդին դրուած է և զոր կը կոչենք ժանգոտում։ Երկու պարագաներուն ալ կատարուածը միևնոյնն է։ Մարդկային մարմնին մէջ այրումը այնքան արագ չէ որքան փայտինը, սակայն աւելի արագ է քան թէ երկաթին օքսիտացումը։

Քանի որ մեր մարմնին մէջ կատարուող կարևոր փոփոխութիւնները այնքան կը նմանին փայտին և ածուխին այրումին, ուրեմն բուն տեղն է հարցնել թէ ի՞նչ տեսակ վառելանիւթ պէտք է գործածուի մեր ֆիզիքական կեանքին բոցը ամէնէն յաջող կերպով և լաւագոյն արդիւնքով վառ պահելու համար։

Սնունդի այնքան տեսակներ կան որ անկարելի է

անոնց վրայ զատ զատ խօսիլ։ Կե՛ր միայն առողջարար սնունդներ, որոնք պէտք եղածին պէս եփած ըլլան, կե՛ր չափաւոր կերպով և զանազանութեամբ ու որոշեալ ժամանակներու մէջ։ Միշտ ուշադրութեամբ դիտէ կերածներուդ ներգործութիւնը։ Եթէ գլխու ցաւ և տենդ ունենաս կամ նոյն իսկ եթէ ինքզինքդ նեղսիրտ կամ գրգռուած զգաս, ուշադրութեամբ փնտռէ թէ վերջին տասներկուքէն մինչև քառասունըութը ժամուան մէջ ինչ տեսակ բան և ինչ քանակութեամբ կերար ու այս եղանակով շատ մը արժէքաւոր յայտնութիւններ պիտի ընես քու անձիդ լաւակեցութեան և առողջութեան մասին։ Լրջութեամբ ուսումնասիրէ առողջութեան այն բազմաթիւ կանոնները, որոնք ուրիշներու կողմէ պատրաստուած են, միշտ մտքէ չի հանելով սակայն թէ ամէնէն դոյզն բարեփոխութիւնը զոր կ'ընես անոնց մէջ, քու անձիդ իսկ պէտքերուն յարմարցնելու համար զանոնք, կախում ունի քու ուշադիր դիտողութենէդ և քու անձիդ ուսումնասիրութենէն։ Երբեք մի՛ ուտեր բան մը, մի միայն անոր համով ըլլալուն համար, եթէ անիկա աղէկ չի գար քեզի։ Միայն անոր համար մի՛ ապրիր որ կարող ըլլաս ուտել, այլ կե՛ր միայն անոր համար, որ կարող ըլլաս ապրիլ։

Կարգ մը մանչեր ու աղջիկներ կը տկարացնեն ու կը հիւանդացնեն իրենց մարմինները, անբնական կերպով ախորժակ մը կազմելով քացախի, աղի, համեմներու, խահուէի և ուրիշ կարգ մը նմանօրինակ բաներու համար, որոնք այնպիսի ձևի մը տակ ու այնքան քանակութեամբ առնուելով, շատ մը կերպերով մեծապէս վնասակար կ'ըլլան։ Այսպիսի սովորութիւններ եթէ կանուխէն չի ձգուին, կ'առաջնորդեն առանձնութեան մէջ և ընկերութեան մէջ կատարուած մոլութեան, կը պատրաստեն մարդը որ արբեցութեան մէջ իյնայ և կը հար-

թարմն այն ճամբան, որ տեւական վնասին կամ նոյն իսկ ամբողջական կործանման կ'առաջնորդէ։ Այսպիսի ընթացքի մը տխուր հետեւանքներուն մենք ալ ականատես եղած ենք յանձին շատ մը մարդոց, որոնք շատ մը տարիներ առաջ, երբ մանչեր կամ աղջիկներ, մեզի հետ էին։

Ինչ որ ճշմարիտ է ուտելու մասին, ճշմարիտ է նաեւ խմելու նկատմամբ։ Խմէ՛ միայն ա՛յն որ առողջութեանդ կը նպաստէ, մաքուր ջուրը, ակէն բխած պաղութեամբ, լաւագոյն ըմպելին է թէ՛ երիտասարդներու եւ թէ ծերերու համար։ Այն տղան որ թէյ կամ խահուէ կը խմէ, երբ ֆիզիքապէս աճելու վրայ է, երբեք այնքան չաճիր, այնքան միանուտ չըլլար ու այնքան առոյգ, որքան պիտի ըլլար եթէ միայն աղէկ, մաքուր ջուր խմէր։ Թէյը եւ խահուէն գրգռիչ են եւ ֆիզիքապէս աճելու տարիքին մէջ երբեք կարելի չէ գործածել զանոնք, առանց նոյն չափով պակսեցնելու կենսականութիւնը, զօրութիւնը եւ աճումը։

Որովհետեւ քեզի համար արժէք մը ունի առողջութիւնը, երջանկութիւնը, օգտակար ըլլալը, նոյն իսկ քու կեանքդ առանձին առնելով, բնաւ որ եւ է ձեւի տակ ոգելից ըմպելիներ մի՛ գործածեր, չուրջդ նայէ եւ տես այն աւերը, զոր ոգելից ըմպելին ուրիշներու կեանքին մէջ կը գործէ, իմաստութեան դասեր ա՛ռ աւելի լուրջ դիտողութեամբ, քան թէ տխուր փորձառութեամբ, եւ յիշէ այս մասին գրուած սա գեղեցիկ խօսքը. «Գինին ծաղր ընող է, ցքին կռիւ հանող, եւ ով որ ասոնց անձնատուր կ'ըլլայ, իմաստուն չըլլար»։ Աստուածաշունչը խօսելով գինիին ու ցքիին վրայ, կ'ըսէ նաեւ այն ինչ որ դուն ալ կրնաս տեսնել եթէ դիտող ես. «Անիկա ետքը օձի պէս կը խածնէ ու քարբի պէս կը խայթէ»։

Ինչ որ ըսի թէյին ու խահուէին համար նոյնը կրնամ ըսել ծխախոտին համար, միայն թէ ըսածներս շատ աւելի զօրացնելով։ Սիկառէթը պզտիկ բան մըն է, անվնաս երեւոյթ մը ունի ու այս պատճառաւ տղոց համար ամէնէն վտանգաւոր և կործանարար փորձութիւններէն մէկը կը ներկայացնէ։ Կրնայ ըլլալ որ սակաւաթիւ մարդիկ, որոնք իրենց տասներեք տարեկանը անցուցած են, որոնց մարմինը կատարելապէս զարգացած է և որոնց ֆիզիքական ու մտաւորական վիճակը բնականօրէն դանդաղ ու ծանրաշարժ է, ծխախոտ գործածեն չափաւոր կերպով, առանց անոր վնասակար ներգործութիւնը տեսնելու։ Բայց բացարձակապէս ստոյգ է որ ֆիզիքական զարգացման մէջ եղող տղայ մը չի կրնար ծխախոտ գործածել, առանց անմիջական և տեւական վնասի ենթարկուելու։ Ուշադրութեամբ նայէ այն տղոց որոնց կը հանդիպիս և որոնք սիկառէթ կը գործածեն. ըստ այն չափին որով այդ տղաքը կը ծխեն, ետ մնացած են իրենց մկանային զարգացման մէջ։ Եթէ դուն յաջողիս գտնել միակ տղայ մը որ սիկառէթ կը ծխէ բաւական քանակութեամբ և որուն մկանները աղէկ մը զարգացած ու զօրացած են, որուն մորթը դունատ չէ, որուն աչքին ճերմակները ամպոտած չեն, գտած պիտի ըլլաս բան մը, զոր բազմաթիւ ուշադիր դիտողներ չեն կրցած գտնել։ Ծխախոտը միշտ կը յամեցնէ տղու մը ֆիզիքական բարգաւաճումը և անոր ուղեղին վրայ գէշ ներգործութիւնը այնքան ուշագրաւ և ծանր է, որքան մարմնոյն։ Վարժարաններու մէջ աղէկ մը դիտուած է թէ անոնք որոնք ծխախոտ կը գործածեն, իրենց դասարաններուն մէջ շատ աւելի վար են անոնցմէ, որոնք երբեք ծխախոտ չեն գործածեր։ Երկրորդական վարժարաններու մէջ գտնուող ուսանողները, դիտուած է որ վերջին չորս տարիներու միջոցին թէ՛

իրենց հասակով, թէ՛ իրենց ծանրութեամբ և թէ իրենց մտաւորական կարողութեամբ ետ կը մնան իրենց ընկերներէն, եթէ ծխախոտ գործածեն։ Ինչ որ ճշմարիտ է երկրորդական վարժարաններու համար, շատ աւելի ուշագրաւ է նախակրթարաններու տղոց համար։

Ծխախոտին գործածութիւնը մեծապէս կը ներգործէ ուղեղի կարողութիւններուն, մարմնոյն իւրաքանչիւր գործարանի առողջութեան և մանաւորապէս վերարտադրող դրութեան առողջ և առոյգ բարգաւաճման վրայ։ Եթէ այն վնասակար ներգործութիւնները, որոնք ծխելուն իբր հետեւանք տեղի կ'ունենան, սահմանափակուին այն անձին վրայ, որ ծխախոտը կը գործածէ, հետեւանքները այնքան դէշ չեն ըլլար, բայց երբ միտքերնիս բերենք որ «մենք անջատ գոյութիւններ չենք, այլ օղակները անվերջ յաջորդութեամբ կեանքի շղթային», այն ատեն կը տեսնենք թէ ինչպէս մեր մարմնոյն վրայ եղած որ և է վնաս կը փոխանցուի տղոց, որոնք մեզմէ վերջը կուգան. ինչպէս մէկ քանի իրիկուն առաջ ըսի քեզի, ինչ որ կ'ուզես որ քու տղաքդ ամէնէն աւելի դիւրաւ և ամէնէն աւելի բնականօրէն ըլլան, պէտք է որ դուն քու ֆիզիքական աճումի տարիքիդ մէջ ջանաս նոյնը ըլլալ։ Ծխելը ոչ միայն վնասակար է, այլ նաև ծախք մըն է և իրեն հետեւանք ունի կարգ մը վտանգներ։ Ես կը յուսայի իմ այս իրիկուան խօսքերուս մէջ կարգ մը նիւթերու մասին ալ կարծիքներ յայտնել, զորս սակայն ստիպուեցայ վաղը իրիկուան թողուլ, մինչև այն ատեն խորհէ այս իրիկուան ըսածներուս վրայ։

# ՏԱՍՆԸՎԵՑԵՐՈՐԴ ՋԱՅՆԱԹԻԹԵՂ

*Աստուած ստեղծեց մարդը աշխատելու համար.— Շատեր կը թուին ծուլութեան համար ծնած ըլլալ.— Ամենքն ալ պէտք է աշխատիլ սորվին.— Աշխատութեան կարգ մը տեսակներ՝ միայն մէկ քանի մկաններ օգնութեան կը կոչեն.— Ամէն մէկ մկան պէտք է որ գործէ.—Մարզանքին կարեւորութիւնը.—Մկանները մարզանքով կ'աճին.— Ասիկա ճշմարիտ չէ սակայն գործարանին համար.—Զբօսանքին կարեւորութիւնը.— Մարզանքի եւ զբօսանքի մէջ եղած տարբերութիւնը.— Առօրեայ պարտականութեանց կատարման ատեն այնքան եռանդ ու հաճոյք կարելի է դնել, որ անիկա զբօսանք մը դառնայ.— Առօրեայ սնունդ եւ առօրեայ մարզանք.—Բաւականաչափ քունի կարեւորութիւնը.— Քունի լաւագոյն ժամերը:*

**Սիրելի բարեկամս Հրանտ,**

*Մարմնոյ եւ մտքի ամբծութիւնը եւ ուժը չեն պահպանուիր միայն սնունդի լաւագոյն տեսակները ուտելով։ Աստուած մեր մարմինը շինած է այնպիսի եղանակով մը, որ եթէ ուզենք զօրաւոր, առողջ եւ երջանիկ ըլլալ, պէտք է որ աշխատինք։ Նոյն իսկ Նախամարդուն անկումէն առաջ, Աստուած Ադամին եւ Եւային աշխատելու բան մը տուաւ. ասիկա անհրաժեշտ էր թէ՛ իրենց առողջութեան եւ թէ՛ իրենց երջանկութեան համար, անոնք իրենց ժամանակը պարապութեան մէջ չէր որ պիտի անցընէին. Եդեմի պարտէզին մէջ դրուած էին, զայն զարդարելու եւ պահպանելու համար։ Բնականէն առաջին անգամ մեզմէ ո՛չ մէկը կ'ուզէ աշխատիլ, մենք ամէնքս ալ ծոյլ նստելու համար կը թուինք ծնած ըլլալ, բայց պէտք է աշխատիլ սորվինք, աշխատութեան ձեռք զարնելով եւ միշտ աշխատութեան մէջ մնալով, այնպիսի ժամանակներու մէջ, ուր ամէնէն աւելի յարմար է սորվիլ աշխատութեան արուեստը եւ զ՛եղ կարող*

դարձնել որ աշխատութեան համը առնենք։ Փախուստ մի՛ տար ընելէ այն բոլոր պզտիկ բաները, որոնք քեզմէ կ'ուզուին, հաւատարիմ եղի՛ր իւրաքանչիւր պարտականութեանդ թէ՛ դպրոցին մէջ և թէ՛ անկից դուրս։ Յիշէ՛ այն հին ու արժէքաւոր ճշմարտութիւնը թէ, «Ինչ որ արժանի է կատարուելու, արժանի է աղէկ կատարուելու, և եթէ արժանի չէ աղէկ կատարուելու, բնաւ արժանի չէ կատարուելու։» Երբեք մի՛ ամչնար ծանր աշխատութիւն մը կատարելու, բարձրացո՛ւր աշխատութիւնդ զայն աղէկ կատարելով և դուն պիտի պատուուիս և յարգուիս զայն ընելուդ համար։

Կարգ մը աշխատութիւններ աւելի միտքը կը զբաղեցնեն քան թէ մարմինը։ Կարգ մը ուրիշներ ալ միայն մարմնոյն մէկ քանի մկանունքը կը գործածեն և միւսները անգործածելի կը թողուն։ Որպէս զի արիւնը կարենայ ազատ կերպով դէպի ամէն մկանները երթալ և ամբողջ մկանները ուժով պահուին, անհրաժեշտ է որ մարմնին մէջ գտնուած ամէն մկան գործէ, այս կէտը ապահովելու համար դրեթէ ամէն մարդ պէտք ունի մարզանքի։ Թէ մարզանքը ի՞նչ տեսակ պէտք է ըլլայ, ատիկա կ'որոշուի իւրաքանչիւր անձին ամենօրեայ աշխատութեան տեսակին համեմատ։ Այն տղան որ ամբողջ օրը քալած է ակօսներու մէջէ կամ ճախճախուտ տեղերէ, իրիկունը այլ եւս մարզանքի համար պէտք չունի քալելու, այնպիսին կրնայ լիճին մէջ թիավարել կամ թէ գետին մէջ լողալ և կամ հանգչիլ ու օգտուիլ աշխատութեան ա՛յնպիսի փոփոխութենէ մը, որ գործակցութեան պիտի կոչէր մկաններու բոլորովին տարբեր աշխատութիւն մը։

Միայն սակաւաթիւ աշխատութիւններ կան որոնք բոլոր մկանները միանգամայն գործունէութեան մէջ կը դնեն․ ուստի չի գործածուած ուժերը արթնցնելու և

ամբողջ մարմինը զօրաւոր ու առողջ պահելու համար մարդոց բոլոր դասակարգերը կրնան օգտուիլ մարզանքի ընդունուած ձեւերէն։ Երբ տղու մը սենեակը մտնեմ, երբեք նկատողութեան չեմ առներ թէ անիկա որքան համեստ է, և երբ մէկ քանի աղէկ ընտրուած գիրքեր գտնեմ՝ գետինը դրուած զոյգ մը մարմնամարզի գունտերով, միշտ կը զգամ թէ այդ տղուն ապագան լեցուն է յոյսով ու խոստումով։ Մարմնամարզի զոյգ մը գունտէն իւրաքանչիւրը երկու կամ երեք քիլօ կը կշռէ և գինը շատ պզտիկ բան մըն է միայն, բայց մեծ արժէք ունի. եթէ այս գունտերուն վրայ աւելցնենք մարմնամարզի ուրիշ մէկ երկու կարեւոր գործիներ եւս, աւելի աղէկ։ Մարզանքը կրնայ պարզ ըլլալ, սակայն եթէ ամէն օր կատարուի կրնանք մեծ օգուտներ սպասել, իրաւ է թէ մարմնամարզի լաւագոյն ձեւին համար հիմա գունտեր կամ ուրիշ գործիքներ չեն պահանջուիր։

Տեսանք կարգ մը տղաք, որոնք կը փափաքէին սեռային անդամի շուտով և մեծապէս բարգաւաճումը և որոնք կը կարծէին այս արդիւնքը ստանալ գիջութեան դիմելով։ Այսպիսի ընթացք մը ո՛չ միայն մեծ մոլութիւն մը ըսել է այլ մեծ սխալ մը միանգամայն։ Մկանները մարզանքով կրնան բարգաւաճիլ, բայց երբե՛ք սեռային անդամին ամէնէն կարեւոր մասը՝ որ ջիղերու մեծ մարմինն է; ջիղերու, որոնք սեռային դրութեան շուրջը կը կեդրոնանան ու անկից ամէն ուղղութեամբ կը բաժնուին ցանցակերպ չարքերով, որոնք յարաբերութեան մէջ են ամբողջ մարմնին մէջ գտնուած ջիղերուն հետ։ Արդ; փոխանակ մարզանքով օգտուելու կամ զօրանալու այս ջիղերը, ընդհակառակը կը վնասուին և եթէ այդ անբնական արարքը յաճախ կրկնուի, այն ատեն ջիղերը բոլորովին կը քայքայուին, և յանցաւորը ստիպուած է կրել հետեւանքները այն մեղքին զոր ինքը իր տգիտութեան մէջ գործեց։

Ոչ միայն մանչեր ու աղջիկներ, այլ այրեր ու կիներ պէտք ունին աշխատութենէ դուրս մարզանքի և զբօսանքի։ Մեծ տարբերութիւն կայ մարզանքի և զբօսանքի մէջ։ Ճշմարիտ զբօսանքը միշտ իր մէջ հաճոյքի տարր մը ունի, այն մարդը որ սղոցով փայտ կը կտրէ կամ թէ մուրճով քար կը կոտրէ, մարզանք մը կատարած կ՚ըլլայ և ոչ թէ զբօսանք մը։ Գնտակ խաղալ, թիավարել, հեծելանիւ նստիլ և ուրիշ շատ մը բաներ իրենց մէջ ունին հաճոյք մը, որով կրնանք զանոնք զբօսանք կոչել։ Զբօսանքը միշտ մինչեւ աստիճան մը մարզանքով կ՚ըլլայ, բայց մարզանքը պէտք չէ որ զբօսանքի էական տարրը կազմէ, ասոր համար է որ այն վայրկեանին երբ զբօսանքը այնքան կը խճողուի որ՝ հաճոյքի տարրը կը կորսուի անոր մէջէն, ալ՝ մարզանք կամ աշխատութիւն կը դառնայ՝ պարագային համեմատ։ Այն տղան որ օրերով դասարանին կամ թէ աշխատանոցի մը մէջ փակուած է, եթէ մէկ կամ երկու ժամ բացօթեայ պտտի՝, ատիկա ճշմարիտ զբօսանք մը կ՚ըլլայ իրեն համար, մինչդեռ այն ոստիկանը՝ որուն պարտականութիւնն է ամէն օր բացօթեայ հսկողութիւն կատարել, անոր համար ալ բացօթեայ տեղ գտնուիլը կը նշանակէ աշխատութիւն և ոչ թէ զբօսանք։

Այսու հանդերձ կան շատ մարդիկ, որոնք ա՛յնպիսի եռանդով ու հաճոյքով կը ձեռնարկեն առօրեայ աշխատութեան որ, իրենց ամէն օր կատարած աշխատութիւնը կը լեցնեն հաճոյքներով և զբօսանքով։ Այսպէս ընելը թէ՛ լաւագոյն է և թէ՛ ամէնէն օգտակար զբօսանքը. դպրոցին մէջ կրնաս գտնել այնպիսի մանչեր ու աղջիկներ, որոնք հաճոյք կը զգան իրենց դասերը պատրաստելով, այդպիսիներուն համար աշխատութիւնը խաղ մըն է, այդպիսի մանչեր ու աղջիկներ, ու այդպիսի այրեր ու կիներ միշտ ամէնէն առողջները ու ամէնէն երջանիկ-

ներն են։ Անոնք աշխատութիւնը այնպէս հաճոյքի կը փոխեն, որ այլ եւս պէտք չունին հաճոյք ունենալու համար աշխատիլ։ Սիրելի տղաս, եթէ կ'ուզես առողջ, երջանիկ ու օգտակար ըլլալ այս աշխարհի մէջ, սորվէ՛ աշխատիլ, ինքզինքդ քու աշխատութեանդ տո՛ւր այնքան լրջութեամբ ու ամբողջ եռանդով որ քու բարձր ու սրբազան նպատակդ ըլլայ աշխատութիւնը խաղի փոխել՝ կամ թէ անիկա քեզի համար ուրախութիւն մը և հաճոյք մը դառնայ։ Մի՛ գործեր ծանր սխալը՝ փողոց ելլելով ուրախութիւն փնտռելու, որովհետեւ ապահով եղիր թէ չպիտի ունենաս զայն։ Հաւատարմօրէն կատարէ պարտականութիւնդ և ուրախութիւնը զքեզ պիտի գտնէ։ Ուրախութիւնը կրնայ քու դէմդ ելլել, բայց դուն չես կրնար ուրախութեան դէմ ելլել։

Ամէն օր սնունդ առ և մարզանք ըրէ, զբօսնէ այնքան յաճախ որքան պէտք ունիս, ամէն անգամ սակայն վստահ ըլլալով թէ լաւագոյն մարզանքը կամ զբօսանքն է որ կ'ընտրես։ Միշտ յիշէ թէ՝ նոյն իսկ լաւագոյն բանը կրնայ վնասակար դառնալ անյարմար ժամանակին, անյարմար եղանակով, չափազանց քանակով և գէշ ընկերներու միջոցաւ։

Քու առողջութիւնդ պահպանելու և ուժդ ու առուգութիւնդ ապահովելու համար, պէտք ունիս նաեւ աղէկ մը քնանալու։ Ութը ժամուան քունը կրնայ բաւական ըլլալ չափահաս մարդոց, սակայն աճելու վրայ եղող մանչերու և աղջիկներու համար ամէն քսանըչորս ժամը անգամ մը տասնէն տասներկու ժամը չափազանց չէ, եթէ ճի՛շդ ժամանակին ըլլայ։ Երբեք գիշերը երկար ատեն արթուն մի՛ նստիր, որովհետեւ գիշերուան առաջին ժամերը քնանալու համար շա՛տ աւելի արժէքաւոր են քան թէ վերջին ժամերը։ Քեզի սովորութիւն մի՛ ըներ առտուները անկողնէդ ուշ ելլել.

սա հին խօսքը թէ «Կանուխ պառկիլ և կանուխ ելլել՝ կ'ընէ մարդս առողջ, հարուստ և իմաստուն» թէև շատ ըսուած խօսք մը՝ սակայն վերին աստիճանի ճշմարիտ է։ Կանուխ պառկէ։ Փետուրներու վրայ մի՛ քնանար։ Անկողին մտիր քնանալու համար։ Միտքդ մի՛ տանջեր։ Քու խղճմտանքդ մաքուր պահէ և գիշերը այնքան պիտի նպաստէ քու աճումիդ, զօրութեանդ և կորովիդ, որքան ցերեկը։

# ՏԱՍՆԸԵՕԹԵՐՈՐԴ ՁԱՅՆԱԹԻԹԵՂ



*Սնունդ եւ մարզանք մտքին համար. — Իմացականութիւնը կրնայ սովորական ըլլալ.— Միտքը կը սնանի աչքերուն, ականջներուն եւ ուրիշ զգայարաններու միջոցաւ. — Մտաւոր սնունդը պէտք է մարսուի խորհելով, նկատի առնելով եւ ուրիշ մտաւոր գործողութիւններով.— Մաքուր սնունդ թէ՛ մտքին եւ թէ՛ մարմնոյն համար. — Մտաւոր սնունդը պէտք է որ աղէկ տեսակէ ըլլայ.—Վատառողջ ընթերցում.—Լաւ ընթերցում.—Հոգեկան բնութիւնն ալ պէտք է որ սնանի. —Յարմար սնունդը. – Վեց կարեւոր օրէնքներ զուարճութեանց համար:*

**Սիրելի բարեկամս Հրանդ,**

*Ինչ որ քեզի երէկ և առջի իրիկուն ըսի սնունդի, մարզանքի և զբօսանքի մասին, որով մարմինը առողջ կը պահուի, նոյնը կրնամ ըսել նաև մտքի զարգացման և առողջութեան անհրաժեշտ եղած մարզանքին, սնունդին և զբօսանքին նկատմամբ։ Միտքը պէտք ունի սնանելու ինչպէս մարմինը։ Չգործածուած մտաւորական ուժերը պէտք ունին մարզուելու և միտքն ալ զբօսանքի կը կարօտի։ Ֆիզիքական ուժերու համար եղած սնունդը մարմնոյն մէջ կը մտնէ բերնէն, բայց ուղեղին սնունդը մարմնոյն մէջ կը մտնէ աչքերուն, ականջներուն և հինգ զգայարանքներէն իւրաքանչիւրին միջոցաւ։ Եթէ դուն իրապէս և տեւականօրէն բերանդ գոցես, ինչպէս մասնաւոր հիւանդութեան մը ատեն կը պատահի, այն ատեն մարմինը սովամահ կ'ըլլայ և նոյն կերպով եթէ գոցես դէպի ուղեղ տանող հինգ մեծ ճամբաները, միտքը սովամահ կ'ըլլայ։ Դուն տեսած ես շատ մը մարդիկ որոնց մարմինը տկար ու սպառած է, որովհետև պէտք եղած չափով սնունդ չեն առած։ Նոյն կերպով ալ շատ մը մարդիկ տկար ու վատուժ միտք մը ունին, որովհետև*

մտաւորապէս սովամահ եղած են։ Ինչպէս որ մարմինը կրնայ սովամահ ըլլալ, ոչ թէ սնունդին պակասէն, այլ անոր տեսակէն, նոյնը կը պատահի մտքին համար ալ։ Մարդիկ կան, որոնք աղէկ տեսակի սնունդ կուտեն և սակայն զայն այնպիսի եղանակով մը կ'ուտեն և այնպիսի չափազանց քանակութեամբ մը, որ ստամոքսը կը վնասուի ու կը հիւանդանայ, ու այս պատճառով մարմինը սովամահ կ'ըլլայ նոյն իսկ այն պարագային, ուր ստամոքսը լեցուն է, որովհետև ինչպէս կը յիշես, ոչ թէ մեր կերած սնունդին քանակութիւնը, այլ մեր մարսա՛ծ սնունդին քանակութիւնն է որ կը սնուցանէ և կը զօրացնէ մեր մարմինը։

Այս եղելութեանց լոյսին մէջ պիտի տեսնես թէ որքան կարևոր է որ տղայ մը սորվի դիտող ըլլալ և խորհիլ բոլոր իր տեսած ու լսած բաներուն ինչպէս և բոլոր այն զգացողութեանց վրայ որոնք հինգ զգայարանքներուն միջոցաւ իրեն մտքին կը հաղորդուին։ Միայն քու տեսածդ կամ լսածդ չէ որ ուժ պիտի տայ մտքիդ ու իմաստուն և խելացի պիտի դարձնէ զքեզ, այլ այն որուն վրայ դուն կը խորհիս և զոր ներքնապէս կը մարսես, ահա այդ է որ քու մտաւորական կարողութիւններուդ պիտի տայ զօրութիւն։ Երբ աշխատիս բան մը սորվիլ, խորհէ թէ ի՛նչ բանի կ'աշխատիս, դասդ ըսելէ յետոյ խորհէ թէ ի՛նչ սորվեցար, կատարելապէս տիրէ մտքիդ մէջ մտած ամէն բանի վրայ, կամ ուրիշ խօսքով մարսէ զայն ճիշդ ինչպէս որ կը մարսես ստամոքսիդ մէջ մտած որ և է բան, որպէս զի ան քու անձիդ մէկ մասը դառնայ։

Շատ զգոյշ եղիր այն բանին համար որով միտքդ կը սնուցանես. ինչպէս չպիտի ուզէիր որ աղտոտ սնունդ մը բերնէդ ներս մտնէ, այնպէս ալ թոյլ մի՛ տար որ աղտոտութիւնը ներս մտնէ միտքէդ կա՛մ գիրքերու

միջոցաւ և կա՛մ ուրիշներու չրթունքներէն. պահպանէ՛ ստամոքսդ, բայց պահպանէ՛ նաև միտքդ։

Ինչպէս որ դուն տեսած ես մարդիկ որոնք անսնունդ և տկար մնացած էին, որովհետև իրենց սնունդը սնուցիչ չէր, այնպէս ալ դուն և ես տեսած ենք տղաք, որոնք թէև չափազանց մոլի ընթերցողներ էին և երեսի վրայ կը ձգէին նոյն իսկ իրենց կարևոր պարտականութիւնները որպէս զի կարենան կարդալ, և փողոցին մէջ, թրամուէյին մէջ, դպրոցը և ամէն տեղ ու ամէն ժամանակ կը կարդային, սակայն փոխանակ հետզհետէ աւելի խելացի դառնալու, իրենց միտքը անկարգ էր և իրենք անտեղեակ ու տգէտ էին։ Այս երևոյթին պատճառը այն չէր որ անոնք չէին կարդար, այլ ա՛յն որ իրենց կարդացածը առողջարար չէր և միտքը անսնունդ կը մնար ու կը տկարանար օրէ օր և տարուէ տարի։

Ինչպէս ասկէ առաջ անգամ մը ըսի թէ չես կրնար մարմինին վնաս հասցնել առանց միտքին վնասելու, նոյնպէս ալ չես կրնար միտքը առանց սնունդի թողուլ և վնասել անոր, առանց վնասելու նաև մարմնին։ Կարդա՛ պատմութիւններ և կենսագրութիւններ, կարդա՛ գիտութեանց և արուեստից մասին, կարդա՛ երկրախուզութիւններ և ճամբորդութիւններ, կարդա՛ բարոյականի և կրօնի մասին գրուածքներ, բայց մի՛ կարդար վէպեր ու աղտոտ գրուածքներ. աշխարհս լեցուն է աղէկ գիրքերով և ներկայիս ու իրականին մէջ խիստ շատ բաներ կան, որոնց մասին պէտք չէ որ դուն տգէտ ըլլաս, և քու ժամանակդ անարժէք գիրքերու ընթերցանութեան տաս։

Ինչպէս որ իմացական բնութիւն մը ունիս որ պէտք է սնուցուի, նմանապէս ունիս բարոյական և հոգեկան բնութիւն մը զոր սնուցանել պարտաւոր ես. ինչպէս որ մարմինը առողջ եղած ատեն կ՚անօթենայ և սնունդ կ՚ուզէ

և միտքը գիտութիւն, այնպէս ալ առողջ հոգեկան բնութիւն մը կ'երթայ Աստուծոյ և հոգեկան ճշմարտութեանց ետևէն և եթէ դուն ուզէիր ուրանալ ինքզինքդ, քու ընտանեկան յարկդ, կրօնքի դասերու, եկեղեցւոյ, կրօնական աղէկ գիրքերու և քրիստոնեայ անձերու ընկերութեան ազդեցութիւնը, քու հոգեկան բնութիւնդ առանց սնունդի պիտի մնար, պիտի տկարանար ու անարժէք բան մը պիտի դառնար: Սնունդ տուր քու ֆիզիքական բնութեանդ բայց մի՛ մոռնար նաև սնուցանել մտաւորական և բարոյական բնութիւններդ ալ:

Քանի որ զուարճութիւնները մտքին կուտան ա՛յն ինչ որ զբօսանքները կուտան մարմնոյն, ուրեմն յարմար տեղն է որ ատոնց մասին ալ խօսիմ: Զուարճութեանց շատ մը ձևեր կան. կան զուարճութիւններ որոնց դէմ բան մը կարելի չէ ըսել, ուրիշներ՝ որոնք խնդրական են և շատ մը ուրիշներ՝ որոնք ապահովաբար գէշ են: Հիմա չեմ կրնար մանրամասնութեանց մտնել, բայց կրնամ ցոյց տալ առողջ սկզբունքներ՝ այսպիսի խնդիրներու մէջ կառավարուելու համար:

**Առաջին.** Երբեք մի՛ մտներ անանկ զուարճութեան մը մէջ որուն համար ստիպուած ես շատ դրամ տալ: Զուարճութիւնը պարզ ժամանց մըն է, և որպէս զի աղէկ ըլլայ պէտք չէ որ անհրաժեշտ դարձնէ արժէք ունեցող որ և է բանի մը զոհողութիւնը:

**Երկրորդ.** Զուարճութիւնը այնպէս մը պէտք է ըլլայ որ քու վիճակիդ պահանջածին համեմատ քեզի ժամանց տայ և կազդուրէ:

**Երրորդ.** Քու զուարճութիւնդ պէտք չէ որ ուրիշներու իրաւանց վնաս հասցնէ կամ թէ անոնց ճամբուն մէջ զանոնք գայթեցնելու պատճառ ըլլայ:

**Չորրորդ.** Այն զուարճութիւնը որ այնքան հրապուրիչ կը դառնայ և կը դրդէ իրմով բռնուողը որ երե-

սի վրայ ձգէ ընտանեկան և կրօնական պարտականութիւնները կամ գործի յանձնառութիւնները, վտանգաւոր զուարճութիւն մըն է և պէտք է հեռանալ անկէ։

**Հինգերորդ.** *Որ և է զուարճութիւն՝ որուն մէջ գլուխաւորները հետեւեալ օրը տեսակ մը դժկամակութեամբ իրենց կեանքի սովորական պարտականութեանց կը ձեռնարկեն, վնասակար է և բոլորովին աղետաբեր։*

**Վեցերորդ.** *Այն զուարճութիւնը որ առաքինութենէ կը հեռացնէ, կրօնքի և նուիրական բաներու մասին կասկած կը ներշնչէ, քու ընտանեկան յարկիդ մասին նուազ խորհիլ կուտայ քեզ, մոլութիւնը գեղեցիկ զգեստներով կը զարդարէ, կիրք յառաջ կը բերէ կամ բարոյական զգացումը կը թմրեցնէ, այդպիսին վտանգաւոր զուարճութիւն մըն է և պէտք է հեռանալ անկէ։*

*Զուարճութեանց մէջ եղիր խոհական, գիտակից և զգուշ։*

*Ինչպէս որ գործի մէջ մարդ պէտք է աշխատի եռանդով ու հաճոյքով, որպէս զի ամենօրեայ աշխատութիւնը տեւական զբօսանք մը դառնայ, այնպէս ալ ուսումը, ընթերցանութիւնը և մտաւորական աշխատութիւնը այնպիսի եռանդով մը և հաճոյքով մը պէտք է կատարուին, որով ամբողջ մտաւորական գործունէութեան մէջ մտնէ ա՛յն տարրը, որ զուարճութիւնը այնքան հրապուրիչ և օգտակար կը դարձնէ։*

*Եթէ մեր գործերուն մէջ դնենք պէտք եղած միտքն ու տրամադրութիւնը, ո՛չ զբօսանքը և ո՛չ զուարճութիւնը մեզի որ և է փորձութեան կամ որ և է լուրջ վտանգի կ՚ենթարկեն։*

# ՀԻՆԳԵՐՈՐԴ ՄԱՍ

Մեր պարտականութիւնը օգնելու ուրիշներուն, որ հեռու մնան վնասակար սովորութիւններէ եւ պահեն կամ վերստանան իրենց մաքրութիւնը եւ զօրութիւնը

## ՏԱՍՆԸՈՒԹԵՐՈՐԴ ՁԱՅՆԱԹԻԹԵՂ

*Ոմանց աւելի բարձր շրջապատը. — Աւելի մեծ երանութիւններ կը նշանակեն աւելի մեծ պատասխանատուութիւններ. — Մեր պարտականութիւնը հանդէպ անոնց, որոնք նուազ նպաստաւոր դիրք մը ունին. — Պարտականութիւն հանդէպ անոնց որոնք տակաւին վտանգի մէջ են. — Շատ մը յանցանքներ կը գործուին հանդէպ անոնց, որոնք տակաւին վտանգի մէջ են. — Շատ մը յանցանքներ կը գործուին անոր համար որովհետեւ առաջուընէ զգուշացուցուած չէ. — Անոնք թշնամիներ պիտի ըլլան իրենց ընկերութեան եւ երկրին հանդէպ, որոնց մասին անփոյթ գտնուած ենք. — Չար տղաքը գործունեայ են. — Ինչո՞ւ համար բարիներն ալ գործունեայ չպիտի ըլլային. — Մերձեցման ճամբաներ, որոնք բաց են տղոց. — Մեղանչելէ առաջ փրկուած. — Կա՛մ տառապանքին ծառայ ըլլալ եւ կամ փրկուիլ տառապելէ. - Ուրիշներու ճամբուն վրայ գտնուած վտանգները հեռացուր:*

**Սիրելի բարեկամս Հրանտ,**

Մինչեւ հիմա քեզի ըսածներէս վերջ, վստահ եմ թէ քեզի պէս խելացի տղայ մը երախտապարտ պիտի ըլլայ Նախախնամութեան որ իրեն կեանք տուաւ եւ զինքը դրաւ այնպիսի ընտանեկան յարկի մը մէջ, ուր հոգատար եւ իմաստուն ծնողք մը պահեց զինքը չարիքներէ եւ այնպիսի տխուր հետեւանքներէ, որոնք այնքան բազմաթիւ տղոց կեանքը կ'ապականեն եւ կը ստորնացընեն։ Ուրեմն դուն պէտք է յիշես թէ այն կէտերուն մէջ ուր մենք լաւագոյն վիճակ մը ունինք քան թէ ուրիշները, այդ բանը ինքզինքնուս պարտական չենք այլ մեր երկնային ամենաբարի Հօր, որ մեզ դրաւ հոն, ուր բարի ազդեցութիւններ եւ բարեկամներ օգնեցին մեզ որ ուրիշներէ աւելի աղէկ ըլլանք։ Եթէ այդ ուրիշները վայելած ըլլային մեր առաւելութիւնները եւ առանձնաշնորհումները, թերեւս անոնք ալ մեզի պէս

ըլլային, և ճշմարիտ չի՞ կրնար համարուիլ եթէ ըսուի թէ մենք ալ այդ ուրիշներուն պէս պիտի ըլլայինք եթէ զանոնք շրջապատող պայմաններու մէջ ծնած ըլլայինք։ Բայց դուն չե՞ս գիտեր թէ այն առաւելութիւնները և շնորհները, զորս վայելած ես, քեզ պարտականութեանց ներքև կը դնեն հանդէպ ուրիշ տղոց, այնպիսի տղոց, որոնք տգէտ և մոլորած են և որոնք իրենց տգիտութեան և մոլորութեան տխուր հետևանքները պիտի կրեն, եթէ դուն և ես չի փորձենք ընել անոնց համար ա՛յն, ինչ որ ուրիշներ մեզի համար ըրած են։

Չե՞ս ընդունիր թէ եթէ դուն քնացած ըլլայիր թշնամիներէ շրջապատուած, որոնք քեզի վնաս հասցընելու նպատակ ունենային, անձնուէր բարեկամ մըն ալ գուշակելով անոնց նպատա՛կը, պէտք էր որ փութար զքեզ արթնցնել և վտանգէն ազատել։ Դուն տեսնելով թշնամիներդ և այն վտանգները որոնցմէ ազատեցար, չե՞ս ընդունիր թէ նոյն բանը պարտական ես երախտագիտութեան համար ընել ուրիշներու, ինչ որ անձնուէր բարեկամ մը քեզի համար ըրաւ։ Բացայայտ կերպով մեր պարտականութիւնն է արթնցնել, զգուշացնել և փրկել անոնք՝ որոնք ենթակայ են ապականութեան և մեղանչումի և ընել ամէն բան մոլութեան մէջ ինկողը ազատելու համար։ Այս տեսակ խնդիրներու մէջ շատեր կը մեղանչեն պարզապէս, որովհետև այդպիսի ընթացքի մը մէջ գէշ հետևանքներէն զիրենք զգուշացնող մը եղած չէ։

Բիւրաւոր տղոց ապագայ վիճակը կախում ունի ուրիշներու՝ այս խնդիրներու մէջ ներկային անոնց ըրածէն. եթէ այդ տղաքը զգուշացուին և իրենց պէտք եղածը ըսուի, պատուաւոր և օգտակար քաղաքացիներ կը դառնան. բայց եթէ ոչ մէկը հոգ ընէ փրկել զանոնք, գէշ մարդիկ և գէշ տղաք այնպիսի ազդեցութիւններ

պիտի ընեն անոնց վրայ որ անոնք ինքզինքնուն և մարդկային ընկերութեան թշնամիներ պիտի դառնան։ Եթէ կ՚ուզուի զանոնք փրկել, պէտք է աշխատիլ անոնց դեռատի եղած ատեն, երբ մոլութեան սովորութիւնները տակաւին արմատացած չեն։ Այդպիսիներուն պէտք է օգնել որ կարող ըլլան տեսնել թէ այդ մոլութիւնը, որ և է ձեւի մը ներքև նոյն իսկ իրենց անձին երջանկութեան և բարեկեցութեան թշնամին է եւ հասկցնել անոնց որ զգան թէ իրենց կատարած մոլութիւնը ատելի բան մըն է անեղծ ու բարի մարդոյ աչքին և մեղք մըն է Աստուծոյ առջեւ։

Գէշ տղաք և գէշ մարդիկ իրենց գործքերուն մէջ ջանք մը կը դնեն, որպէս զի ուրիշներ մոլորեցնեն. անոնք առիթը չեն կորսնցներ չար խորհուրդներ և մոլի արարքներ իրենց շուրջը տարածելու։ Ինչու համար ուրեմն դուն և բոլոր բարի մարդիկ չպիտի ջանային տարածել այնպիսի օգտակար և փրկարար ծանօթութիւններ, որոնք ուրիշները պիտի փրկէին մեղքէ, ֆիզիքական և մտաւորական տկարութենէ և թերեւս կործանումէ։

Տղաք այս նիւթի մասին ուրիշ տղոց մօտենալու ճամբաներ կը գտնեն, որոնք աւելի տարիքոտ անձերու համար բաց չեն. դուն ալ տղայ մը ըլլալով կրնաս այս նիւթին վրայօք ուրիշ տղոց մօտենալ և մանաւանդ երբ այդ տղոց առաջին անգամ է որ այդպիսի նիւթերու վրայ ակնարկութիւն կ՚ըլլայ։ Եթէ դուն կարող ըլլաս տղայ մը մեղքէ ու մոլութենէ փրկել, բարի գործ մը ըրած կ՚ըլլաս. փրկել մէկը որ արդէն սխալ ճամբէ գացած է, կը նշանակէ աղէկ ծառայութիւն մը կատարած ըլլալ, սակայն չե՞ս ընդունիր թէ նոյն անձը առջի օրէն այդպիսի գէշ և վնասակար արարքէ մը փրկել շատ աւելի աղէկ պիտի ըլլար։ Ճիշդ նոյն բանն է եթէ ես աղքատ մարդու մը տունը երթայի և իրեն շաքարթնե-

բով, գիշեր ցերեկ քարոզէի, մինչ անիկա խնալով ոսկորները կոտրած ըլլալուն համար, մարմնի սոսկալի ցաւեր ունենար. եթէ կարող ըլլայի իր ցաւերուն դարման մը տանիլ, ապահովաբար աղէկ գործ մը ըրած պիտի ըլլայի, և չե՞ս ընդունիր որ ինծի համար շատ աւելի դիւրին ծառայութիւն մը պիտի ըլլար այդ բանը։

Այսպէս ալ դուն կրնաս չարիքը և վտանգը ուրիշ տղոց ճամբէն հեռացնելու ջանադիր ըլլալ, և մանաւանդ այնպիսի տղոց, որոնք քեզմէ աւելի պզտիկ են։ Երբեք տղայ մը ծաղրելի ըլլալու վիճակին մէջ մի դներ, որովհետեւ այդ պարագային կը փճացնես անոր ամօթի զգացումը, որ անոր կրնայ օգտակար ըլլալ ինքզինքը ուղղելու գործին մէջ և առանց որու իր սխալ ճամբուն մէջ բոլորովին յառաջանալով, անտարբեր կը դառնայ պարկեշտութեան և ամօթի ամէն զգացումներու հանդէպ. այդպիսի տղոց յանձնարարէ կարդալ գիրքեր, որոնք կրնան օգտակար ըլլալ իրենց։ Կարգ մը աղաքլաւ ծառայութիւն մը մատուցած կ՚ըլլան յանձնարարելով իրարու «Ի՞նչ պէտք է գիտնայ դեռատի մանչ մը» գիրքը։

Որպէս զի դուն լուսաբանուած ըլլաս այս խնդրոյն նկատմամբ և կարող ըլլաս ուրիշներու ալ թելադրութիւններ ընելու խորհուրդներ տալ, խօսքս վերջացնելէ առաջ կը փափաքիմ վերը իրիկուն ամէնէն օգտակար բաներու վրայօք կարգ մը բաներ ըսել քեզի, զորս պէտք է կատարեն անոնք որոնք կը փափաքին կարելի եղածին չափ վերստանալ ինչ որ իրենց տգիտութեան երեսէն կամ կամովին մեղանչելով կորսնցուցած են։ Յետոյ այլ եւս վերջ մը պիտի դնեմ խօսքերուս, մէկ քանի բաներ եւս ըսելով այն փոփոխութեանց մասին որոնց պէտք է դուն սպասես քու խակ մարմնիդ մէջ, յառաջիկայ մէկ քանի տարիներու ընթացքին ու այսպէս պատրաստուիս նոր փորձառութեանց և ինքզինքդ կարող ըլլաս պաշտպանել այնպիսի վտանգներու դէմ, որոնք քու ճամբուդ ընթացքին վրայ կը գտնուին։

# ՎԵՑԵՐՈՐԴ ՄԱՍ

## Մաքրութիւնը եւ զօրութիւնը ի՞նչպէս կրնան ըստ բաւականին վերստացուիլ

# ՏԱՍՆԸԻՆՆԵՐՈՐԴ ՁԱՅՆԱԹԻԹԵՂ

*Մաքրութիւնը եւ զօրութիւնը ի՞նչպէս կը ստացուին.— Ապաքինման կատարելութիւնը կախում ունի վնասուած մարդուն վնասին չափէն եւ դարմանումի մեթոդէն.— Արդէն թելադրուած օրէնքներու կարեւորութիւնը.— Ամիսներու եւ տարիներու պէտքը.— Լոգանքին կարեւորութիւնը.— Խորհուրդ հարցուր ծնողաց եւ բժիշկին.— Անբնական համեստութիւն այս խնդիրներու մէջ.— Բոլոր մասերը պէտք է մտածման մաքրութեան մէջ պահել.— Կարեւոր թելադրութիւններ մարզանքի, քունի, պահեցողութեան եւլն.ի նկատմամբ.— Աստուծմէ խնդրէ ամէն օր որ քեզի օգնէ:*

**Սիրելի բարեկամս Հրանտ,**

*Խոստումիս համաձայն կը փափաքիմ այս իրիկուն խօսիլ քեզ թէ ի՞նչպէս մաքրութիւնը և զօրութիւնը կրնան ըստ բաւականին վերստացուիլ անոնց կողմէ, որոնք ենթական եղած են տղոց մէջ այնքան տարածուած գէշ ունակութեան: Թէ տղայ մը որքան ալ ինքնապղծութեան ընթացքին մէջ գտնուած ըլլայ, կարող է իր ամբողջ կորովը վերստանալ, կախում ունի այն չափէն, որով անիկա այդ մոլութեան ենթարկուած էր: Կարծեմ լաւագոյն կերպով պատկերացուցած կ'ըլլամ եթէ ըսեմ թէ արդիւնքը ճիշդ նման է այն պարագային՝ երբ մէկը ձեռքին կամ մարմնին ո և է մէկ մասին վրայ վէրք մը կը ստանայ: Ընդհանրապէս վէրքը կրնայ բուժուիլ, բայց կատարեալ բուժումը կախում ունի վէրքին աւելի կամ նուազ ծանր ըլլալէն և այն իմաստութենէն, որով դարմանումը ի գործ կը դրուի: Մարմնին ո՛չ մէկ մասը, որ անգամ մը վնասուած է կրնայ յետոյ բացարձակապէս դառնալ այն՝ ինչ որ վնասուելէն առաջ էր. որովհետեւ նոյն իսկ երբ մատերնիս պարզապէս սուր դանակով մը կտրենք, կտրուածքը քիչ օրէն կը բուժուի,*

բայց տարիներով և թերևս ամբողջ կեանքի տեւողութեանը սպին կը մնայ և սպիին մեծութիւնը կախում ունի կտրուածքին մեծութենէն։

Որքան ալ ակնարկուած մոլութիւնը ցաւալի բան մը ըլլայ, նորէն երբ տղայ մը կը սթափի և կը գիտակցի թէ որքան կարեւոր է իրեն համար անկեղծ ու տեւական բարուոքում մը, միշտ պէտք է քաջալերել զինքը, որ յուսայ և սպասէ ամէնէն յաջող արդիւնքները, միայն թէ պէտք է դիմէ Աստուծոյ, խոստովանի իր մեղքը, խնդրէ Աստուծոյ ներողութիւնը անցեալին համար, Քրիստոսը ընդունի իբր իր փրկիչը և օգնականը և բոլորովին Անոր ապաւինի թէ՛ իր մոլութենէն և թէ՛ անոր հետեւանքներէն ազատելու համար՝ իր կատարած պայքարին մէջ։ Մեծ արդիւնքներ կրնան սպասուիլ եթէ այս կէտին մէջ մարդ գործէ Աստուծոյ հետ, բայց եթէ մարդկային նպատակը և ջանքը բազմապահանջ ըլլայ, Աստուած պիտի արգիլուի իր ուզածը ընելէ։ Ո՛չ Աստուած և ո՛չ ալ մարդս կրնան առանձին գործել այսպիսի խնդիրներու մէջ։ Մարդկային ջանքը և Աստուածային օգնութիւնը պէտք է միասին ընթանան։

Բոլոր այն բաները զորս մէկ քանի իրիկուն առաջ ըսի քեզի՝ բացատրելով թէ ի՛նչպէս տղաք կրնան իրենց մարմինը ամբիծ ու զօրաւոր պահել, մեծ կարեւորութիւն ունին այն տղոց համար, որոնք կ'ուզեն մոլութենէ հեռանալ և կը ջանան վերստանալ ինչ որ կորսնցուցած են։ Աղէկ մը միտքդ բեր ինչ որ քեզի ըսի տասնըչորսերորդ, տասնըհինգերորդ, տասնըվեցերորդ և տասնըեօթերորդ ձայնաթիթեղներով։ Որպէս զի աւելի խորունկնան այն տպաւորութիւնները որոնք քու միտքիդ վրայ յառաջ եկան իմ անժամանակ ըսածներէս, նախ այդ ձայնաթիթեղները նորէն կրամօֆօնին վրայ դիր և անոնց մտիկ ընելէ վերջը գրի առ ինչ որ ըսած եմ

*սրտի և մտքի ամբծութեան, մարմնոյ մաքրութեան վրայ թէ՛ ներսէն և թէ՛ դուրսէն, բոլոր այն տեսակ բաներու մասին, զորս սնունդի կամ ըմպելիի ձևին ներքև մեր մարմնէն ներս կ'առնենք, այն կարևորութեան մասին, որով պէտք է զգուշանանք ամէն տեսակ գրգռիչ սնունդներէ կամ ըմպելիներէ, աշխատութեան անհրաժեշտութեան, մարզանքի, զբօսանքի, դուարճութեան և քունի արժէքին ինչպէս նաև անհրաժեշտութեանը մասին միտքին և բարոյական բնութեան յարմար սնունդը ստանալուն։ Վերոյիշեալ ձայնաթիթեղներու մէջ խօսուած ամէն բան շատ կարևոր է ամէն անոնց՝ որոնք կը փափաքին զօրաւոր դառնալ և պահել կամ վերստանալ ինքզինքնուն վրայ ունեցած կատարեալ իշխանութիւնը։ Թէև ամէն ինչ այդ ձայնաթիթեղներուն մէջ այնքան շեշտուելով ըսուած է, սակայն կան կարգ մը կէտեր, որոնք պէտք է քիչ մը աւելի մանրամասնուին, ամէն անոնց համար, որոնք կ'ուզեն հեռանալ այս գէշ սովորութենէն և կ'ուզեն ձեռք անցընել ինչ որ գացած է։*

*Ինչ որ՝ այս վիճակին մէջ գտնուող մը՝ կը ջանայ ձեռք անցընել, մէկ շաբաթուան կամ մէկ ամսուան, կամ նոյն իսկ ամբողջ մէկ տարուան մէջ կարելի չէ ստանալ։ Մեծագոյն և լաւագոյն ֆիզիքական բարգաւաճումը արդիւնքն է տարիներով տարուած յարատև խնամքներու։ Լոգանքը աւագ կարևորութիւն ունի. շաբաթական կարևոր լոգանքին վրայ պէտք է աւելցնել ամէն օր առաւօտուն պաղ ջուրի մէջ ձեռքի լոգանքը և եթէ սեռային մասերը տենդոտ կամ դիւրագրգիռ են, աղէկ արդիւնքներ կրնան ստացուիլ։ Վերոյիշեալ լոգանքներուն վրայ պէտք է աւելցնել նաև իրիկունը անկողին մտնելէ առաջ սեռային մասերու պաղ ջուրով լոգանքը։ Այս լոգանքը ամէնէն աւելի աղէկ կերպով կը կատարուի ջուրով ամանը գետինը դնելով և*

անոր վրայ նստելու ձեւով ծռելով. միայն ամառը լոգանքները կրնան պաղ ջուրով ըլլալ առաւօտուն և երեկոյին, ուր պէտք չկայ մեծ զգուշութիւններ ձեռք առնել չի պաղելու համար։ Բայց անգամ մը որ մարմինը պաղ ջուրի գործածութեան վարժուած է, լոգանքը ինքնին կը զօրացնէ մարմինը սովորական լոգանքներու ատեն պաղ առնելու պարագային։

Այն պարագային ուր սեռային անդամին ծայրը շատ դիւրագրգիռ է և դժուար կ'ըլլայ զայն մաքուր և կամ գրգռումէ զերծ պահել, այն ատեն տղան պէտք է որ իր ծնողաց խորհուրդին դիմէ, որոնք իրազեկ բժիշկի մը դիմելով, այս վերջինը տղուն պէտք եղած դարմանումը կ'ընէ ներկայացած բացառիկ պարագային համեմատ։ Այսպիսի շատ մը պարագաներու մէջ թլփատութիւնը, որ վիրաբուժական շատ պարզ գործողութիւն մըն է, միակ արդիւնաւոր և տեւական դարմանումն է ներկայացող դժուարութեան։

Ինչպէս որ տղայ մը իր ծնողքին կը դիմէ երբ վնասուած ըլլայ որ և է արկածով մը, նմանապէս պէտք է անոր դիմէ երբ վնաս մը կամ հիւանդութիւն մը ելած է իր սեռային անդամներուն։ Այն զգացումը որ այսպիսի պարագաներու մէջ տղոց մեծագոյն մասը ետ կը պահէ, անբնական պարկեշտութիւն է և կամ թէ արդիւնք գէշ ունակութեանց կամ մոլի մտածմանց։ Պատճառ մը չկայ որ պէտք եղած կերպով մեր մարմնին սեռային մասերուն վրայ չխօսինք ինչպէս ուրիշ ո և է մասի մը վրայ։ Միտքերնիս բերենք որ մեր մարմնոյն բոլոր մասերն ալ Աստուած շինեց, հետեւաբար բոլոր մասերն ալ հաւասարապէս նուիրական են։ Ո՛չ սեռային մասերը ինքնին եւ ո՛չ ալ անոնց մասին խօսիլը անմաքուր կամ անպատեհ է, մինչեւ որ մէկը իր լուկ արարքներով այնպէս չընէ զանոնք։ Ամէն տղայ որ բարի ծնողք

մը ունի, իրեն ներկայ հանգստութեան և ապագայ եր-ջանկութեան և օգտակարութեան համար անոնց պարտա-կան է, եթէ ընտանիքին բժիշկը անմիջապէս կը տեղե-կանայ թէ ինքը որ եւ է հիւանդութիւն մը կամ ան-հանգստութիւն մը ունի։

Եթէ խօսէի այնպիսի տղու մը որ կը փափաքի հե-ռանալ իր մոլութենէն, ապահովաբար հեռեւեալը պիտի ըսէի անոր, բայց օդի մէջ չատ մարզանք կատա-րէ, ասիկա պէտք է որ որոշ օրէնքներու համաձայն եւ կանոնաւորապէս կատարուի, ոչ թէ քիչ մը հիմա եւ քիչ մը վերջը, այլ ամէն օր և բաւական երկար ժամա-նակ, մինչեւ որ յոգնութեան զգացումը վրայ հասնի. մի՛տքդ ալ զբաղեցուր. դդուշացիր բոլոր վէպերէն եւ աղտոտ գիրքերէն, բայց չատ կարդա աղէկ գիրքեր. ջանա՛ ուշադիր ըլլալ, ամէն էջէ և պարբերութենէ յետոյ կանգ առ և միտքդ բեր թէ ճիշտ հիմա ինչ կար-դացիր, երբ գիրքին վերջին հասնիս, նորէն գիրքին սկիզբը դարձուր և աչքէ անցուր իւրաքանչիւր գլուխը, թէ՛ մարմինդ և թէ՛ միտքդ կանոնաւորութեան տակ ա՛ռ, մարմնոյդ և միտքիդ սովլեցո՛ւր հնազանդիլ կամ-քիդ, ասիկա չատ կարեւոր է, որովհետեւ ջանքը՝ նկա-րագիրը կը զարգացնէ, ուժը կ'աւելցնէ, և տղայ մը կը դարձնէ տիրական և տիրող։

Բնացի՛ր կարծր անկողնի մը վրայ եւ օդասուն սենեակի մը մէջ, վերմակով չափազանց մի՛ ծածկուիր. կռնակիդ վրայ մի՛ քնանար. փետուրէ անկողիններէ հեռու կեցիր, բաց ի ամէնէն ծայրայեղ կլիմաներու եւ ամէնէն ծայրայեղ պարագաներու մէջ. առանձին ան-կողնի մէջ պառկէ, բարձով աթոռներ մի՛ ընտրեր, ձի մի՛ հեծնար. հեռո՛ւ կեցիր ամէն տեսակ դրգռիչ ս-նունդներէ և ըմպելիներէ, մէջը ըլլալով թէյը և խահ-ուէն. քաքաօն և չօղօլատը չատ աւելի նախընտրելի

են։ Ամէն տղոց և մարդոց համար՝ որոնք սեռային դիւրագրգռութենէ և տկարութենէ կը տառապին՝ ամէն տեսակ ոգելից ըմպելիները և ծխախոտը մանաւորաբար վնասակար են։

Զգո՛ւշ եղիր կերածներուդ մասին, կաթեղէն եւ բանջարեղէն սնունդներ ամէնէն աւելի նպաստաւոր են կարենալ իշխելու համար սեռային դիւրազգայութեան վրայ. սակայն չափաւոր քանակութեամբ թարմ միս ալ պէտք է գործածուի տկարութեան և վատուժութեան տեղի չտալու համար։ Թարմ ձուկը աղէկ է բայց հաւկիթ ալ պէտք է գործածուի չափաւորութեամբ։ Խոզի միսը գէշ է, աղած միսերը դժուարամարս են և ոչ սննդարար։ Պղպեղ, երշիկներ և համեմներ պէտք չէ ուտել, անուշով խմորեղէններ և կարկանդակներ ստամոքսը կը խանգարեն և այս պատճառաւ մարմնոյն կը վնասեն. շաքար նմէ երբեք ուտուի պէտք է չափաւորութեամբ ուտել և բնաւ ճաշի միջոցին։ Աւշադրութիւն ըրէ որ տաքատդ այնպէս մը շինուած ըլլայ որ ուժով չի ճնշէ սեռային գործարաններուդ վրայ, զգուշացի՛ր մեղապարտ ընկերներէ, մի՛ նայիր աղտոտ պատկերներու, զգուշացի՛ր այն փորձութիւններէն որոնք միմիայն ըլլալէ առաջ կուգան, բարի ընկերոջ ընկերակցութիւնը փնտռէ՛, կեանքի մէջ բարձր և սրբազան նպատակ մը ունեցի՛ր, ամէն օր Աստուծոյ օգնութիւնը խնդրէ՛ և փութայ դէպի առաջ՝ վերստանալով կորուսած ուժերդ, մի՛ խրտչիր դժուարութիւններէն, յարատեւող եղի՛ր ու Աստուած պիտի օգնէ և յաղթանակը ու յաջողութիւնը որոնց կը սպասես, քուկդ պիտի ըլլան։

Ասոնք, սիրելի տղաս, իմ յորդորներս են ամէն տղու, որ իր կռնակը կը դարձնէ գէշ անցեալին և իր երեսը յոյսով լեցուն է դէպի ապագան։

# ՔՍԱՆԵՐՈՐԴ ՁԱՅՆԱԹԻԹԵՂ

*Տղայութենէ դէպի կատարեալ այր մարդ ըլլալու անցքը. — Ֆիզիքական եւ մտաւորական փոփոխութիւններ որոնք չափահասութեան տարիքին տեղի կ'ունենան. — «Չափահասութիւն» բառին իմաստը. — Քնացող ուժերը. — Անոնք կ'արթննան եւ մեզի պէտք եղած կերպով կատարելապէս կը հասունանան. — Տասնըչորս տարեկանէն մինչեւ քսանըհինգ տարեկան այր մարդը հասուննալու վրայ է. — Չափահասութենէ առաջ մանչերը եւ աղջիկները իրենց յատկանիշներով շատ կը նմանին իրարու. — Տասնըչորս տարեկանին այր մարդու յատուկ յատկանիշները կը սկսին զարգանալ. — Նոր եւ տագնապեցուցիչ փորձառութիւններ. — Աստուծոյ դրած բնութիւնը կ'արթննայ. — Չսպասուած վտանգները. — Ի՞նչպէս տղայ մը կ'ազդուի. — Այս միջոցը յուզման եւ իրարանցումի շրջանն է. — Վտանգներ՝ որոնք տգիտութենէ յառաջ կուգան. — Մտացիութեան կարեւորութիւնը:*

**Սիրելի բարեկամս Հրանտ,**

*Անկից որչափ տարիներ առաջ այն օրօրոցը որուն մէջ հիմա պզտիկ քոյրդ կը քնանայ, քուկդ էր, բայց դուն այսօր հեռացած ես օրօրոցէն և կը փութաս դէպ յառաջ, դէպի կատարեալ այրութիւն, և դէպի կեանք մը օգտակարութեան, պատւոյ և երջանկութեան: Երկու երեք տարի եւս պիտի շարունակես ըլլալ տղայ մը ու անկէ վերջ, տասնըչորս կամ տասնըհինգ տարեկանէդ պիտի մտնես բազմաթիւ տարիներ տեւող շրջանի մը մէջ, ուր վերարտադրող դրութեան այն մասերը որոնք քու մարմնիդ ներքին և ստորին մասերուն մէջ պահուած են, պիտի սկսին զարգանալ և դուն պիտի զգաս յուզումներ, որոնք մատնանիշ պիտի ընեն բոլորովին նոր և տարօրինակ փոփոխութիւններ: Ֆիզիքական և մտաւորական այն փոփոխութիւնները որոնք այդ միջոցին կը պատահին և այն պայմանները որոնք անոնց կ'ըն-*

կերպանան, չատ մը տղոց համար կը նշանակեն մեծ խորհուրդի, վարանումի և վտանգի շրջան մը։ Որպէս զի այդ փոփոխութիւնները յանպատրաստից վրադ չգան և դուն բանաւորապէս դատելով ընդունիս զանոնք, կը փափաքիմ առաջուընէ մէկ քանի խօսք ընել քեզի ամէն տղու կեանքին մէջ պատահած այդ ժամանակին վրայ, որ կը կոչուի «Զափահասութեան տարիք»։ Եթէ բոյսերու վրայ խօսած ատեննիս գործածած ըլլայինք նաև չափահասութիւն բառը, ատիկա պիտի նշանակէր այն ժամանակը երբ բոյսը առաջին անգամ ըլլալով կը սկսի ծաղիկներ ունենալ։ Իսկ տղոց գալով, ասիկա այն ժամանակն է ուր վերարտադրող կամ սեռային գործարանները կը սկսին զարգանալ և սեռային հեղուկը առաջին անգամ ըլլալով կը սկսի կազմուիլ մարմնին ներքին և ստորին մասին մէջ գտնուած գեղձերու մէջ։

Երբ առաջին անգամ աշխարհ կուգանք իբր բոլորովին անօգնական նորածիններ, Աստուած անմիջապէս մեզի չի տար բոլոր ուժերը և կարողութիւնները որոնց պէտք պիտի ունենանք ապագային և որոնց սակայն պէտք չունինք այդ առջի օրերուն։ Սակայն Աստուած այն ուժերը՝ կուտայ մեզի երբ մենք պէտք ունենանք անոնց. առաջին անգամ երախան ակռայի պէտք չունի, բայց մէկ կամ երկու տարի ետքը Աստուած մէկ քանի հատ կուտայ, յետոյ ուրիշներ կ'աւելցնէ և հետզհետէ՝ պէտք եղածին չափ։ Երբ մանուկը կը ծնի, ակռաներուն ծայրերը լինդերուն տակը ծածկուած են, սաղմնային վիճակի մէջ են, ինչպէս գիտուններ կ'ըսեն, սպասելով ճիշդ ժամանակին որ աճին, երբ մանուկը աւելի մեծցած է և պէտք ունի անոնց. Նոյն եղանակով վերարտադրող դրութիւնը բոլոր առողջ տղոց մէջ կը մնայ անզարգացած, սաղմնային և քնացող վիճակի մէջ, մինչև անոր տասնըչորս կամ տասնըհինգ տարեկան ըլ-

լալը, ուր այս դրութիւնը կը սկսի արթննալ և աճիլ, և զանազան փոփոխութիւններ կը սկսին տեղի ունենալ աստիճանաբար, տարիներու ընթացքին, տղան մանկութենէն մինչեւ կատարեալ մարդու վիճակը բարձրացնելով ու փոխելով։

Այս փոփոխութիւնները, որոնք տասնըչորսէն մինչեւ քսանըհինգ տարեկանը տեղի կ'ունենան և որոնք սակայն շատ աչքի կը զարնեն և շատ փորձիչ են տասնըչորսէն մինչեւ տասնըհինգ տարեկան, մեծ կարեւորութիւն ունին, և որքան շատեր իրենց տգիտութեամբ կ'իյնան մոլութեան և մեղքի մէջ ճիշդ այս միջոցին և առարկայ կը դառնան վաղահաս փճացումի մը։ Ուրեմն անհրաժեշտ է որ բոլոր տղաք գիտնան թէ ի՛նչ է գալիքը, որպէս զի կարող ըլլան անոր ճշմարիտ իմաստը հասկնալ և հասկնան նաև իրենց նոր փորձառութեանց և փորձիչ պայմաններուն նշանակութիւնը։

Մեծագոյն առաջին կամ տեսանելի փոփոխութիւնները կը կատարուին արագաբար մէկ կամ երկու տարուան միջոցին և իրենց արդիւնքները շատ ուշագրաւ են, բայց ամէնէն դժուարին շրջանը, որու միջոցին մեծագոյն ներքին և անտեսանելի ֆիզիքական և մտաւորական փոփոխութիւնները կը կատարուին, գոնէ շատ մը պարագաներու, կը ներկայանայ տասնըչորսէն մինչեւ քսանըմէկ տարեկանը, սակայն այդ փոփոխութիւնները բոլորովին լրացած չեն և կատարեալ սեռային հասունութիւնը միայն քսանըհինգ տարեկանին կը ստացուի։

Կեանքի առաջին տարիներուն, երբ վերարտադրող գործարանները կը քնանան և չեն զարգացած, մանչեր ու աղջիկներ, իրենց ֆիզիքական և մտաւորական յատկանիշերով մեծապէս իրարու կը նմանին։ Բայց տասնըչորս տարեկանի ատենները (ոմանց համար աւելի կանուխ և ոմանց համար աւելի ուշ) երբ չափահասութեան

շրջանին կը մօտենան, սեռին յատուկ յատկանիշերը և գիծերը կը սկսին զարգանալ. մանչերը աւելի առնական կը դառնան և աղջիկները աւելի կնոջական։

Երբ այս ժամանակը կը հասնի, մանչերը կը սկսին իրենց ետին թողուլ մանկութեան յատկանիշերը, մարմինը արագաբար կ'աճի, ուսերը կը լայննան, կուրծքը կը խորունկնայ, ձայնը կը կորսնցնէ իր մանկական հնչիւնը և աւելի խորունկ ու աւելի զօրաւոր կը դառնայ, մորթը աւելի կը կարծրանայ և երեսին վրայ մազը կը սկսի բուսնիլ։ Ոսկորները աւելի կը կարծրանան, սեռային մասերը կը սկսին զարգանալ և քիչ տարիէն իմաստութեան ակռաները կ'երեւին։

Առաջին օրերուն, տղան անճարակ երեւոյթ մը կ'առնէ, ձայնը կը կորսի, ձեռքերը և ոտքերը կը մեծնան, դիւրագրգիռ կ'ըլլայ այն տեսակ պարագաներու, ուր առկէ առաջ բոլորովին անտարբեր կը մնար։ Կ'ենթարկուի նոր զգացողութեանց և նոր փափաքներու, զորս անկարող է մեկնել ու ըմբռնել։ Աւելի քաղաքավար կ'ըլլայ և օտարականներու հանդէպ իր վարմունքին մէջ աւելի առնական և մանաւորաբար հանդէպ կանանց։ Կը սկսի իրեն տարեկից աղջիկներու ընկերակցութիւնը փնտռել։ Բոլոր այս ժամանակի ընթացքին անոր մէջ արթնցած է ու արագաբար կ'աճի Աստուծոյ կողմէ դրուած բնութիւն մը, որ կոչուած է զինքը ամէն տեսակէտով աւելի ազնիւ ու աւելի կատարեալ մէկը ընելու։

Սակայն այս միջոցին է որ սեռային կիրքը կը սկսի ինքզինքը յայտնել։ Եթէ տղան տգէտ է և բարոյական տկար զգացում մը ունի, կամ չար ընկերներու ազդեցութեան տակ կը գտնուի, հաւանաբար մեծ վտանգներ կը սպառեն իրեն։ Այս տագնապալի ժամանակն է տասներեքէն մինչև քսանըմէկ, ուր տղաք դիւրագրգիռ և յանդուգն կ'ըլլան, հակառակութեան զգացում մը

կը սնուցանեն, ճկուն չեն և երբեմն ալ անհնազանդ։ Այս միջոցին է որ շատ մը մանչեր ու աղջիկներ, որոնց ծնողքը չեն հասկնար անոնց վիճակը և որոնք մոռցած են իրենց նոյն տարիքին մէջ եղած ատենին ունեցած զգացումները և փորձառութիւնները, կը փափաքին ազատիլ ամէն կապերէ և երբեմն նոյն իսկ տունէն կը հեռանան։

Այս միջոցին է ուր այն տղան որ ատկէ առաջ հնազանդ ու աշխատասէր էր, յաճախ կը դառնայ ծոյլ, անհնազանդ և անկարգ։ Տասնըչորսէն տասնըութը տարեկան տղաք յաճախ դպրոցներու մէջ իրենց ուսուցիչներուն անհնազանդ կ'ըլլան։ Ամբողջ բնութիւնը կը զգայ այն յեղաշրջումը որ կատարուելու վրայ է և տղուն մէջ գտնուած ամէնէն դէշ յատկութիւնները երեւան կու գան։ Ասիկա տղուն կեանքի փորձառութեան այն շրջանն է զոր Գերմանացիները կը կոչեն «փոթորկի և յուզման շրջան»։

Եթէ տղան լուսաբանուած է և եթէ իր ծնողքը և ուսուցիչները կը հասկնան ու կ'ըմբռնեն թէ տղան ի՛նչ շրջանէ մը կ'անցնի, այն ատեն ամէն բան աղէկ պիտի փոխուի, հակառակ երեւցած նշաններուն, և քանի՛ երիտասարդը մօտենայ քսան տարեկանին և անկից անդին անցնի, այնքան փոթորիկը պիտի նուազի, և եթէ պահպանուած է չարիքէ և հեռու մնացած մեղանչումէ, իր ապագան հետզհետէ աւելի՛ հանդարտ, աւելի երջանիկ ու աւելի՛ բարգաւաճ պիտի ըլլայ, բայց եթէ մոլութիւն և չարիք իր կեանքին մէջ մտած են, հետզհետէ եկող տարիները իրենց հետ պիտի բերեն յարաճուն կիրք ու մեղանչում, յուսախաբութիւն ու տառապանք։

Կը տեսնե՞ս, սիրելի տղաս, ո՛րքան կարեւոր է այս միջոցին, որ մէկու մը ամբողջ կեանքին ամէնէն փորձիչ ժամանակն է, որպէս զի տղայ մը առանձին չի ձգուի որ

դիպիս քիչ առնէն կեանքի մէջ։ Փափաքեցայ որ դուն տղայութենէ չափահասութեան անցած միջոցիդ կարող ըլլաս հեռու մնալ բոլոր այն դժուարին կացութիւններէն և վտանգներէն որոնք չատերուն դժբաղդութեան պատճառ կ'ըլլան։ Ամբծութիւնը կը նմանի ցօղին, որ առաւօտուն խոտերու և ծաղիկներու վրայ կը փայլի բիւրեղային գեղեցկութեամբ և որ եթէ անգամ մը կոպիտ ձեռքով մը հեռացուի անկէ, այլ եւս մարդկային արուեստով կամ ճարտարութեամբ կարելի չըլլար նորէն զայն հոն բերել, թէև աշխարհիս բոլոր ջուրերը գտնուած ըլլան մարդուս տրամադրութեան ներքև։

Գիտնալով թէ կարգ մը տղոց համար որքան փափաքելի է չափահաս մարդ ըլլալ և թէ կարգ մը տղաք որքան անհամբերութիւն ցոյց կուտան, երբ կը նշմարեն թէ ուրիշներ կը զարգանան և փոփոխութիւններ կը կրեն, մինչդեռ իրենք նոյնը չեն ըլլար, այս առթիւ կը փափաքիմ քեզի մատնանիշ ընել դատողութեան մեծ սխալ մը, զոր չատ տղաք կը գործեն և որ կարող է գէշ գործքերու առաջնորդել։ Այս գործքերը փոխանակ փութացնելու չափահասութիւնը, պատճառ կը դառնան տկարութեան և հիւանդութեան, որուն հետեւանքը կ'ըլլայ վերջնական պարտութիւն մը այնքան ջանքերէ յետոյ։

Այն տարիքը, որուն մէջ տղաք արբունքի կը հասնին և իրենց վրայ փոփոխութիւններ տեղի կ'ունենան, որոնց մասին երէկ իրիկուն խօսեցայ, միեւնոյնը չէ ամէնուն համար։ Մանչերուն մէջ այդ փոփոխութիւնները հազուագիւտ և բացառիկ պարագաներու տակ՝ կը սկըսին տասներկու տարեկանին, և ուրիչ նոյնքան հազուագիւտ պարագաներու տակ ալ՝ մինչև տասնըութը տարեկանը կ'ուշանայ արբունքը։ Այս տարբերութիւնը վերագրելի է ազգայնութեան, ցեղի կամ չատ անգամ

կլիմայի։ Բայց ամէնէն աւելի յաճախ անձի մը՝ մարմնական առողջութեան կամ տկարութեան համեմատ է որ ան տեղի կ'ունենայ։ Տաք երկիրներու մէջ արբունքը աւելի կանուխ կը հասնի, և հիւսիսային արեւմտեան ցուրտ կլիմայի ներքև ալ շատ աւելի ուշ։ Սեւամորթ տղաք տրամադիր են աւելի կանուխ արբունքի հասնիլ քան թէ սպիտակամորթ տղաք։ Խառնուածք, զբաղում և սովորութիւններ, մեծ դեր կը խաղան այս մասին, բայց ինչպէս ըսի, առողջութեան պայմանը մեծագոյն դերը կը խաղայ։ Ընդհանրապէս դիտուած է որ տղաք որոնք տկար, ջղային կազմուածք մը ժառանգած են կամ վատառողջ կացութենէ մը կը տառապին, ամէնէն առաջ կ'ենթարկուին այն փոփոխութեանց, որոնք արբունքի մերձաւորութիւնը և ներկայութիւնը կը ծանուցանեն։ Մինչդեռ միւս կողմէ ընդհանուր օրէնքը այն է որ, այն տղաք որոնք մեծ մասամբ բացօթեայ կ'ապրին և կը կատարեն այնպիսի աշխատութիւններ որոնց համար մարմնական զօրաւոր մարզանք անհրաժեշտ է, և որոնք չափահաս այրերու բացօթեայ զբօսանաց կուտան ինքզինքնին, զօրաւոր մարմին մը և լաւ առողջութիւն մը ունենալնուն համար, այդպիսիները աւելի յամրաբար կ'ենթարկուին արբունքի նախապատրաստական փոփոխութեանց։

Ասիկա միայն ուրիշ մէկ արտայայտութիւնն է բանի մը, որ ամէն տղայ նշմարած է պտուղներուն վրայ։ Խնձորենիի, դեղձենիի, կեռասենիի և ուրիշ պտղատու ծառերու վրայ մինչ պտուղները կ'աճին, այդ պտուղներուն մէջէն ոմանք որոնք ամէնէն առաջ կը կարմրին և հասուն կ'երեւան, կրնան զմեզ հրապուրել, բայց երբ քննենք զանոնք պիտի տեսնենք թէ միշտ որդնոտած և հիւանդ են։

Այն տղան, որ ժամանակէն առաջ կը ջանայ ար-

բունքի հասնիլ մեղանչական արարքներով, առով փոխանակ արբունքի, տկարութիւն և հիւանդութիւն ապահոված կ'ըլլայ. մինչդեռ այն տղան որ հոգ կը տանի նկատողութեան առնելու առողջութեան բոլոր օրէնքները և որ զօրաւոր կերպով կ'աճի և մարմնական լաւ առողջութեան մը տէր կ'ըլլայ, նուազ գրգռում, ջղայնութիւն և սեռային դիւրազգայութիւն կ'ունենայ և չափահասութեան տարիքին մէջ կը մտնէ, առանց հանդիպելու այն փորձութեանց և դժուարութիւններուն, որոնցմէ կը տառապին բոլոր ժառանգական կամ ստացական կերպով մարմնական տկարութեան կամ հիւանդութեան ենթակայ եղողները։ Ոչ մէկ ժամանակ, սիրելի տղաս, մի՛ ցանկար այն վաղաժամ ֆիզիքական զարգացման որ բնաւ զքեզ ճշմարտապէս փափաքելի բանով մը չի կրնար օժտել, որովհետև վաղաժամ արբունք կը նշանակէ վաղաժամ անկում։

Յարմար սնունդ առնելով, ամենօրեայ լոգանքով և բացօթեայ մարզանքով որ պէտք չէ շատ յոգնեցուցիչ և շատ երկարատև ըլլայ, այլ ըստ բնականին յաճախակի և ուժով, դուն պիտի յաջողիս ստանալ այն մարմնական և մտաւորական կորովը որ քեզի համար պիտի պատրաստէ երկար տարիներու առողջութիւն և մեծ յարմարութիւն օգտակար ըլլալու։

Առաջին չափահասութեան (adolescence) տարիները, որոնք մանչուն համար կը սկսին մօտաւորապէս տասներչորս տարեկանին և կը տևեն մինչև քսանըհինգ տարեկանը, լեցուն են դժուարութիւններով, փորձութիւններով և վտանգներով։ Այս տարիներու ընթացքին է որ տղոց մեծ մասը սխալներ կը գործէ և ուղիղ ճամբէն կը խոտորի, ոմանք ֆիզիքապէս, ոմանք մտաւորապէս, ոմանք բարոյապէս և ոմանք ալ այս երեք տեսակէտներով միանգամայն։ Այս սխալները ամէնէն

աւելի կը ծագին անհատին ազատութենէն։ Ես համոզուած եմ թէ շատ սակաւաթիւ տղաք միայն կամովին ուղիղ ճամբէն կը խոտորին և շատեր կը մեղանչեն իրենց ազատութեան երեսէն և կը շարունակեն մինչև որ մոլութիւնները հաստատ սովորութիւններ դառնան. և կործանումը անխուսափելի դառնայ։

Այս պատճառաւ է որ անհրաժեշտ դատեցի քեզի խօսելու այդ փոփոխութեանց մասին, անոնց տեղի ունենալէն առաջ, որպէս զի քու մատաղ տարիքիդ մէջ զգուշացուցուած ըլլալով կարենաս մարմնիդ մշակումով տանիլ ֆիզիքական այնպիսի ուժ ու կորով որ կարող ըլլաս այս ժամանակամիջոցին մէջէն անցնիլ կատարեալ ապահովութեամբ և մնալ քու չափահասութեան տարիներուդ մէջ, իբր ազնիւ, ամբիծ և աստուածահաճոյ մարդ մը։ Եթէ յիշես բառերս և ուղես գործադրել ըրած թելադրութիւններս, կը կարծեմ թէ վերարտադրող գործարաններու մասին այնպիսի տեղեկութիւններ պիտի ունենաս, որոնք քեզի պիտի ծառայեն մինչև տասնըվեց կամ տասնըեօթը տարիքդ, ու անկից վերջը պէտք ունենալիք տեղեկութիւններդ և թելադրութիւններդ ամփոփած եմ Ի՞ՆՉ ՊԷՏՔ Է ԳԻՏՆԱՅ ԵՐԻՏԱՍԱՐԴ ՄԸ (1) անունով գրքին մէջ, զոր դեռ նոր աւարտած էի երբ մօրմէդ նամակ մը ստացայ որ կը հրաւիրէր զիս քեզի ղրկելու այս ներկայ ձայնաթիթեղները։

Եւ հիմա, սիրելի բարեկամս Հրանտ, բաժնուելէ առաջ կը փափաքիմ զգուշացնել քեզ վտանգաւոր սխալէ մը, զոր հազարաւորներ կը գործեն, այսինքն ձգձգելու սխալէն. դուն թերևս ընդունեցիր իմ բառերուս ճշմարտութիւնը, և պարկեշտօրէն նպատակ ունիս անոնց համեմատ վարուիլ, բայց փոխանակ անմիջապէս գործի սկսելու, թերևս յառաջիկային կը թողուս այդ բանը և

(1) 1908ի վերջերը հրատարակելի։ (Ծ. Թ.)

այսպէս անհոգութեամբ և անդիմադրելի կերպով կը կորսնցնես ամէն ինչ զոր կը յուսայիր ձեռք անցընել, թերեւս այնքան շատերու պէս կը խորհիս թէ ուժով և առողջ ես, թէ այնքան իրաւունք ունիս ուրախ ըլլալու և թէ որովհետև դեռ այնքան մատաղատի ես, կրնաս ախորժակիդ կարեւորութիւն չտալ, անխնամ թողուլ հոգիդ, բռնաբարել Աստուծոյ ֆիզիքական և բարոյական օրէնքները, ապագային անցեալին տեղը լեցնել պէտք եղած մարզանքով և հոգատար պահեցողութեամբ։ Թէև դուն փրկուած ես գաղտնի մեղանչումէն, որ ուրիշները կը քայքայէ, սակայն քու առողջութեանդ խնամքը և քու ֆիզիքական, մտաւորական և հոգեկան ուժերուդ զարգացումը, ամէնէն առաջ և անմիջական կարեւորութիւնը ունին. կեանքիդ մէջ ոչ մէկ ուրիշ ժամանակ կրնաս այնքան դիւրութեամբ և յաջողութեամբ ստանալ այս փափաքելի ձիրքերուն լաւագոյնները, որքան անմիջական՝ ներկային մէջ։

Որպէս զի տգիտութեան մէջ մեծնայ, տղու մը համար ամէնէն կարճ ճամբան, գիրքերը և դպրոցը երեսի վրայ թողուլն է։ Որպէս զի սնանկանայ, վաճառական մը թող անհաշիւ կերպով դրամը մսխէ, պէտք չունի աննպաստ շահադիտութիւններ ընելու, թող երեսի վրայ ձգէ իր գործի պարտականութիւնները և սնանկութիւնը անխուսափելի կը դառնայ։ Թող ագարակապանը իր արտերը հունտեր չի սերմանէ, դաշտերը երեսի վրայ մնան, մացառներ ու փուշեր բուսնին ամէն կողմ, և եթէ ամէն բան այսպէս շարունակուի այն ատեն պարզ պարտազանցութեան մը հետեւանքը կ՚ըլլայ ընդհանուր քայքայում։ Ու այսպէս ալ, սիրելի տղաս, նոյն բան հակառակ անոր որ դուն արդէն ֆիզիքական, մտաւորական և հոգեկան լաւագոյն մշակման տիրացած ես, եթէ թերանաս յարատեւ մարզանքով և գործածութեամբ պահել ու պահ-

պահել այդ յատկութիւնները, ապահովաբար պիտի կորսնցնես զանոնք։ Եթէ իրերը այսպէս են, ինչպէս դուն կրնաս զերծ ըլլալ անտարբերութեան և յապաղման հետեւանքներէն, եթէ սկզբնաւորութեանը դուն անհոգութեամբ կը վարուիս այդ կարեւոր բաներուն հանդէպ։

Կրնայ ըլլալ որ ընդունիս քու ֆիզիքական և մտաւորական բնութիւններուդ մասին ըրած թելադրութիւններս և գործադրես զանոնք, և երեսի վրայ թողուս քու հոգեկան բնութիւնդ, որ ամէնէն կարեւորն է։ Սատանան ապահովաբար ականջդ ի վար կը փսփսայ թէ ինչ որ ըսի թէեւ ճշմարիտ է, սակայն դուն պզտիկ ես դեռ և յառաջիկային, դպրոցական օրերդ անցնելէ վերջը, երբ ալ գործի մտած ես, այն ատեն առատ ժամանակ պիտի ունենաս զբաղելու համար հոգեկան բաներով և այսպէս տարուէ տարի կը փորձէ քեզ յետաձգել տալ մինչ քու կեանքիդ լաւագոյն տարիները և եթէ կարելի է ըսել քու կեանքիդ բոլոր տարիները կը կորսուին, անձիդ երջանկութեանը համար պարզապէս ժամանակին պարտքդ կատարած չըլլալուդ համար։

Ո՛չ, մի՛ ձգձգեր, երեսի վրայ մի՛ թողուր, որովհետև եթէ այդպէս ընես չես կրնար ազատիլ այդպիսի սխալի մը հետեւանքներէն։ Մարմնական տկարութիւն և հիւանդութիւն պիտի խաթարեն քու առնական զօրութիւնդ, տգիտութիւնը իր գահը պիտի բարձրացնէ հոն, ուր իմաստութիւն պէտք էր տիրէր, և հոգեկան բնութիւնը զոր Աստուած նորէն պիտի հաստատէր իր նմանութեան և պատկերին համեմատ, սատանան մոլութեան և մեղանչումի միջոցաւ կերպարանափոխ և անճանաչելի պիտի դարձնէ։ Այս հետեւանքները անխուսափելի են և կարելի չէ խուսափիլ անոնցմէ եթէ վայրկեանին պարտականութիւնդ չի կատարես։

Սիրելի տղա՛ս, մի՛ ձգձգեր, հիմա որ մնաս բարով կ'ըսեմ քեզի, կը խնդրեմ որ անմիջապէս մեկուսանաս և առանձին ծունգի եկած աղօթես Աստուծոյ որպէս զի Քրիստոսի պահպանութիւնը վրադ ըլլայ, յանցանքներդ ներուին, մաքուր, ամբիծ և սիրազեղ սիրտ մը տրուի քեզի և զքեզ Իրեն յաւիտենական ընկերութեան մէջ առնէ։ Իրեն հետ ընկերութիւն մը հաւատարմօրէն ծառայելու համար Իրեն, այս ժամէն սկսելով, և թող Աստուած առատապէս օրհնէ քեզի այս աշխարհի մէջ և հանդերձեալին քեզի պսակէ յաւիտենական պատուով ու փառքով։



# Օ. ԱՐՋՈՒՄԱՆ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ



*Օ. Արզուման հրատարակչական ձեռնարկին նպատակ և սկզբունք ընտրուած են ժողովուրդին* **ՕԳՏԱԿԱՐ, ՀՐԱՀԱՆԳԻՉ** *և* **ՀԱՃԵԼԻ** *հրատարակութիւններ ընծայել։*

*Օ. Արզուման Հրատարակութիւնները՝ բաց ի այս յատկութիւններէն, որոնք անհրաժեշտ են արդէն ամէն հրատարակչական գործի նպատակին,* **առանձնայատուկ** *առաւելութիւն մըն ալ պիտի ունենան իրենց գեղարուեստական ու գեղեցկագիտական ճաշակի տեսակէտով։*

*Մինչեւ հիմա լոյս տեսնող Օ. Արզուման հրատարակութիւններն են.—*

**1. Ի՞նչ Պէտք է Գիտնայ Դեռատի Աղջիկ մը**

**2. Աղջկան Վտանգը**

**3. Ի՞նչ Պէտք է Գիտնայ Դեռատի Մանչ մը**

*Հասցէ՝*

**Օ. ԱՐԶՈՒՄԱՆ**

Ղալաթիա, Գուրշունլու խան, թիւ 7

Կ. ՊՈԼԻՍ

*Հետզհետէ լոյս պիտի տեսնեն հետեւեալները.—*

## Ի՞ՆՉ ՊԷՏՔ Է ԳԻՏՆԱՅ ՉԱՓԱՀԱՍ ՕՐԻՈՐԴ ՄԸ

**Ա. ՄԱՍ**

*Տղայութիւնը եւ աճում*

**Բ. ՄԱՍ**

*Կնոջականութիւն*

**Գ. ՄԱՍ**

*Սէր եւ ամուսնութիւն*

## Ի՞ՆՉ ՊԷՏՔ Է ԳԻՏՆԱՅ ԵՐԻՏԱՍԱՐԴ ՄԸ

**Ա. ՄԱՍ**

*Ուժ*

**Բ. ՄԱՍ**

*Տկարութիւն*

**Գ. ՄԱՍ**

*Ընկերական մոլութիւն*

**Դ. ՄԱՍ**

*Վերարտադրող գործարաններ*

**Ե. ՄԱՍ**

*Այր մարդուն եւ կնոջ յարաբերութիւնը*

**Զ. ՄԱՍ**

*Արգելքներ եւ օժանդակութիւն*

## Ի՞ՆՉ ՊԷՏՔ Է ԳԻՏՆԱՅ 45 ՏԱՐԵԿԱՆ ԿԻՆ ՄԸ

---

**Ա. ՄԱՍ**

*Լրացեալ տարիքի ծանօթութեանց անհրաժեշտութիւն*

**Բ. ՄԱՍ**

*Փոփոխութեան նշաններ*
*Հիւանդութիւններ եւ դարմաններ*

**Գ. ՄԱՍ**

*Այր եւ կին, երկուքն ալ անցեալին ի՞նչ բան պէտք է յիշեն*

**Դ. ՄԱՍ**

*Ինքնաթելադրութիւն եւ ուրիշ թելադրութիւններ*

## Ի՞ՆՉ ՊԷՏՔ Է ԳԻՏՆԱՅ 45 ՏԱՐԵԿԱՆ ԱՅՐ ՄԸ

---

**Ա. ՄԱՍ**

**Ի՞նչ պէտք է գիտնայ իր անձին նկատմամբ**

**Բ. ՄԱՍ**

**Ի՞նչ պէտք է գիտնայ իր կնոջ նկատմամբ**